ԱԶԳԱՅԻՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ

ՃՂԱ.

# ԿԷՕՉԷՅԵԱՆ ԳԵՐԴԱՍՏԱՆԸ

Գրեց

Հ. ԵՓՐԵՄ Վ. ՊՕՂՈՍԵԱՆ

Մխիթ. Ուխտէն



ՎԻԵՆՆԱ

ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ

1961

# ԿԷՕՃԷՅԵԱՆ ԳԵՐԴԱՍՏԱՆԸ

ԳՐԵՑ

**Հ. ԵՓՐԵՄ Վ. ՊՕՂՈՍԵԱՆ**

ՄԽԻԹ. ՈՒԽՏԷՆ



ՎԻԵՆՆԱ

ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ

1961

# DIE FAMILIE KÖTSCHEYAN

VON

P. EPHREM POGHOSSIAN

MECHITHARIST



WIEN

MECHITHARISTEN-BUCHDRUCKEREI

1961

# ԵՐԿՈՒ ԽՕՍՔ

Հայ Կաթողիկէ Կէօշէյեան Գերդաստանի պատմութիւնը նախապէս լոյս ընծայեցինք Հանդէս Ամսօրեայի մէջ, որմէ կ'արտատպուի այս փոքրիկ հատորը: Ուսումնասիրութեանս աշխատանքը մեծապէս դիւրացաւ քանի մը ազնիւ անձերու ընծայած թանկագին տեղեկութիւններովն ու ծանօթութիւններովը:

Մասնաւորապէս երախտապարտ ենք Կէօշէյեան երկու քոյրերու՝ Տիկ. Պերճուհի Գույումճեան փաշայի եւ Տիկ. Մարիամ-Նազլը Գորինալդիի, յետոյ Գեր. Յովհ. Վ. Նալպանտեանի եւ Գեր. Ներսէս Վ. Սէթեանի, ինչպէս նաեւ Դոկտ. Զարեհ Օհանեանի, որոնց կը յայտնենք հրապարակաւ մեր շնորհակալութիւնը:

ՀԵՂԻՆԱԿԸ

## ՆԵՐԱԾՈՒԹԻՒՆ

1952ին նամակ մը գրելով մեզ՝ Գեր. Յովհաննէս Արքեպ. Նազլեան իր գոհունակութիւնը կը յայտնէր որ ձեռնարկած ենք ուսումնասիրել Հայ Կաթողիկէ Գերդաստաններու պատմութիւնը: Այդ առթիւ փափագ կը յայտնէր Գերապայծառը որ գրուի նաեւ Կէօչէյեաններու մասին: Նիւթերու անբաւականութիւնը թոյլ չէր տար Կէօչէյեան Գերդաստանի առաջնութիւն տալու այն ատեն: Ուրախութեամբ լսեցինք յետոյ սակայն թէ կա՛ն տակաւին ողջ անդամներ Կէօչէյեաններէն, այսինքն՝ 1. Տիկ. Պերճուհի Գույումճեան Փաշա, 2. Տիկ. Աստինէ Կիւմիւշկերտեան (Հռոմ), 3. Մարիամ Նազլը Կորինալդի եւ իր զաւակները (Պադուա, Իտալիա), 4. Արամ Պէյի սերունդը (Բրեշիա, Իտալիա) եւ 5. Ընտանիք մը ի Կեռլա (Հունգարիա–Ռումանիա):

Փափագելով շարունակել 1949ին սկիզբ ըրած մեր ուսումնասիրական շարքը — Հայ Կաթ. Գերդաստաններ — փութացինք 1954ին եւ 1955ին նամակներ գրել թէ՛ Հռոմ եւ թէ

Պաղուա։ Հակառակ իր տարիքի յառաջացումին ու հիւանդոտ վիճակին՝ Տիկ. Պերճուհի (Ներկայիս 94 տարեկան) շատ մեծ ազնուութեամբ ընդառաջեց մեր խնդրանքներուն եւ թէ՛ հնարաւոր եղած չափով ծանօթութիւններ եւ թէ հօր՝ Յակոբ Կէօչէյեանի — Գերդաստանի նշանաւորագոյն անձին լուսանկարը հաճեցաւ ղրկել մեզ Գեր. Յովհաննէս Վ. Նալպանտեանի եւ Գեր. Գրիգոր Վ. Պետրովիչի միջոցաւ։ Նոյնպէս Տիկ. Մարիամ Նազլըէն ստացանք թանկագին լուսաբանութիւններ։ Վերջինս իտալերէն լեզուաւ ընդարձակ ինքնագիր գրութիւն մը ղրկեց Կէօչէյեան Գերդաստանի մասին։ Շնորհակալութեամբ պիտի յիշեմ նաեւ Գեր. Ներսէս Վ. Սեթեանը, որ հաճեցաւ Իստամբուլէն Հայ Կաթ. Պատրիարքարանի մէջ եղած արձանագրութիւններու ցանկը ղրկել։

Այս առթիւ իմացանք թէ Կէօչէյեաններն ալ չեն ունեցած ընտանեկան հին Քրոնիկ-ժամանակագրութիւն մը իրենց Գերդաստանի մասին։

Իբրեւ անձնական պրպտումներու աղբիւրներ ունեցանք նախ Վիեննայի մեր Միաբանութեան Դիւանը եւ յետոյ Հայ Մամուլը. ինչպէս նաեւ քանի մը հեղինակութիւններ, որոնք պիտի յիշատակուին ուսումնասիրութեանս ընթացքին։

Այս պրպտումներուն առթիւ հանդիպեցանք քանի մը հետաքրքրական լուսաբանու-

*Թիւններու մեր* «Ալլահվէրտեան Գերդաստանի» (*Վիեննա* 1957) *գրքոյկին մէջ* անծանօթ մնացած կէտերու մասին, *որոնք հոս ներկայացնել աւելորդ չենք նկատեր՝ գոհացնելու համար շահագրգռուող հետաքրքիր ընթերցողները* :

1. Տիկին Քաթինկօ Նազարէթ Ալլահվէրտեանի (*անդ՝ էջ* 43) *մահուան թուականը չէինք կրցած ստուգել: Մեռած է 1844ին, Պոլիս՝ Պեյլրղատ գիւղը եւ կտակած է մեր վանքին* 7500 *դրշ.* (*Դիւ. Վիենն. Միխթ.* 1844 *Յուլիս* 10) *իբր մշտնջենաւոր պատարագուց: Նոյնքան գումար մ'ալ միւս վանքերուն՝ նոյն նպատակով* (*Դիւ.* 1844 *Սեպտեմբեր* 25) :

2. *Նազարէթ Ամիրայի* չորրորդ *մանչ զաւակը կռահումով համարած էինք* Մանուկ Պէյ (*անդ՝ էջ* 60–62) : *Նոյնը ստուգելով՝ կը հաստատենք մեր Դիւանի նամակներու լոյսին տակ: Նազարէթ Ամիրայի* չորրորդ *մանչ տղան է* Մանիկ *կամ* Մանուկ Պէյ, *որուն* մահուան *թուականը եւ այլ պարագաները* անծանօթ ըլլալով *կը գրէինք. «Սակայն բոլորովին անծանօթ մնացած է իր կնոջ անունը, ինչպէս* անծանօթ է *Մանուկ Պէյի եւ կնոջ* մահուան թուականը *եւ իրենց* սերունդ ունենալու կամ չունենալու պարագան (*Անդ՝ էջ* 61) : *Արդ, Մանիկ կամ Մանուկ Պէյ* մեռած է 1846 Ապրիլին, *երբ տակաւին* քանի մը օրուան նշանած էր (*Դիւ.* 1846 *Ապրիլ* 22) : *Հետեւաբար սերունդ* չէ ունեցած : *Եղ.*

Նիկողայոս Պալճեան կը գրէ 1846 Ապր. 20ին Պոլսէն. «Որդին Նազարէթ Աղայի Մանուկ Պէյն, որ եկն ի վանս ընդ Վ. Հ. Գէորգ Հիւրմիւզի, վախճանեցաւ յաւուրն Զատկին ի վերեմէ հիւանդութեան եւ Հասունեանն կատարեաց զթաղումն» :

3. Նազարէթ Ամիրայի «վերջին երեք զաւակներու անունները անծանօթ են» կը գրէինք (Անդ՝ էջ 62) : Անծանօթ զաւակներէն մին զատանք. Իսկուհի կը կոչուի եւ 1855 Յուլ. 11ին մեռած եւ մեծ հանդէսով թաղուած է Բերայի գերեզմանատունը (Դիւ. 1855 Յուլ. 1) :

1. ԳԵՐԴԱՍՏԱՆԻ ԾԱԳՈՒՄԸ ՆԱԽԻՋԵՒԱՆԷՆ

Հայ Կաթողիկէ Կէօչէյեաններու մասին, որչափ գիտենք հրատարակութիւն մը չէ եղած ցարդ : Ներկայիս Կէօչէյեան սերունդի զաւակ Տիկին մըն է, Տիկ. Մարիամ Նազլը Կորինալդի, որ փորձած է առաջին անգամ ըլլալով, ուրուագծել իր գերդաստանի պատմութիւնը : Տիկինը հայերէն չգիտնալով՝ իտալերէն շարադրած է իր գրութիւնը՝ բարձր, ազնուական եւ գեղեցիկ ոճով մը :

Ինչպէս Յառաջաբանին մէջ կը մատնանըշէ՝ Տիկինը յատկապէս ուզած է իր Յիշատակները գրի առնել, բայց փափաքելով Կէօչէյեաններու հնագոյն պատմութեան վրայ ծանօթութիւն մը գտնել՝ դիմած է վեննետիկցի

Փրանկիսկեան *վարդապետի մը — Հ. Ֆիլիպի — որպէս զի Վենետիկ քաղաքի Դիւանին մէջ գտնուէ իր* Goucci *(Կէօչէ) ընտանիքի մասին: Վարդապետը երկու նամակ կը գտնէ որոնց բովանդակութենէն կ'իմացուի թէ երկու եղբայրներ* — Գէորգ եւ Անտոն Կուչչինները — *Իտալիոյ Ֆիրէնցէ քաղաքէն* ԺԷ · դարուն *Վենետիկ կ'անցնին եւ անկէ առագաստանաւ կ'առնեն արեւելքը տեսնելու դիտումով: Կը հասնին* Պոլիս, *անկէ* Տրապիզոն, *յետոյ* Երեւան *եւ կ'ուզեն բարձրանալ* Արարատ Լեռը: *Գէորգ կը մեռնի այդ առթիւ, իսկ Անտոն ուժաթափ, ձմեռ ատեն, կէս մեռած՝ շուներէ քաշկռտուելով կը հասնի մինչեւ* Օրբելեաններուն *տունը, որոնք Պարսկաստանէն եկած հին սատրապներու սերունդ են եւ կը բնակէին* Նախիջեւան, *Արարատի ստորոտը: Հոգ տարուած խնամքներու շնորհիւ՝ Անտոն ինքզինքը կը գտնէ եւ մէկ տարիի չափ կը մնայ: Օրբելեան ընտանիքի աղջկան՝* Թագուհիի *հետ կը պսակուի եւ կ'ունենայ* Յովսէփ *անունով որդի մը: Անտոնի կեանքը որսի եւ պատերազմի մէջ ուրախ կ'անցնի: Որսորդութեան մը միջոցին Անտոն կը բարձրանայ բարձր լեռ մը, արծիւի մը հետեւելով, կը կորսնցնէ հաւասարակշռութիւնը եւ կ'իյնայ վար՝ մեռած: Իր ընկերները կը տանին տուն ու կը թաղեն:*

*Որդին՝* Յովսէփ *կ'ամուսնանայ հեռաւոր ազգականի մը աղջկան՝* Քրիստինէի *հետ,*

որ այդ նահապետական ընտանիքին մէջ կ'ապրէր : Անոնք կ'ունենան շատ մը զաւակներ, որոնց մէջ նշանաւոր կ'ըլլայ Անտոն, որ ուսման սէր ունենալով՝ կը հետեւի զանազան ուսմունքներու : ԺԸ . դարու սկիզբները կ'ամուսնանայ Տիրուհի Տէօվլէթի հետ եւ կը փոխադրուի Պոլիս :

Այս ամէնը, ինչպէս ըսինք, խտալերէն լեզուով գրուած «Յիշատակագրի» մը մէջ կը պատմէ Տիկ. Մարիամ Նազլը, դուստր Կէօչէյեան Գերդաստանի ամենակարկառուն դէմքին — Յակոբ Կէօչէյեանի :

Կայ սակայն երկրորդ կարծիք մ'ալ Կէօչէյեանց ծագումի մասին : Ըստ Մէնմուայր Ախպարի խմբագրին՝ վերոյիշեալ Յակոբ Կէօչէյեանի հայրը Անտոն, ո'չ թէ Հայաստանի Նախիջեւան քաղաքէն, այլ Արդուինի մօտ գտնուող Արտանուշ (Արտանուջ) գիւղէն գաղթած եկած է Պոլիս : Ահա Մէնմուայրի խօսքերը . «(Կէօչէզատէ Յակոբ) Իսթանպօլտա տիւնեաեա կելմիշ օլուպ, բետերի իսէ անասըլ Արտանուշ օլտուղուն տան, քէնտի մէսարիֆիյէ մահէլլէ մէզքիւրտէ տախի պիր մատուռ ինշա իթտիրմիշ օղտուղու մէրվի տիր» (Մէնմ. Ախպար, Կ. Պ. 1893, Թ. 2577) : Այս երկրորդ կարծիքը կը յայտնէ նաեւ Հայրենիք (Կ. Պ. 1893, Թ. 355) գրելով. «(Յակոբ Կէօչէյեան) Արդուինի մօտ Արտանուշ գիւղին մէջ մատուռ մը շինել տուած է իր ծախքովը : Յակոբ էֆ. Պոլիս

ծնած էր, բայց իր հայրը (Անտոն) գաղթած էր այդ Արտանուշ գիւղէն»։

Արտանուշի կարծեկիցները որեւէ թուական չեն տար ո՛չ Անտոնի անկէ հեռանալուն, ո՛չ ալ անոր որդի՝ Յակոբին հոն մատուռ շինելուն։ Յակոբ Կէօշէյեան 1893 Յունուար 9ին կը մեռնի։ Իր մահէն երկու տարի առաջ Արտանուշցի անուանի գրագէտ մը՝ Կ. Տիրեան (Առաքել Սարուխան) Արտանուշի վրայ տեղեկատուութիւն մը գրի կ'առնէ՝ հոն այցելութեան մ'առթիւ եւ միայն եկեղեցի մը կը յիշէ հոն, ո՛չ մատուռի խօսք կ'ընէ եւ ոչ ալ Կէօշէյեան կը յիշէ (Տե՛ս Հանդէս Ամսօրեայ, 1890, էջ 281—282)։ Ե՞րբ ուրեմն կրնայ շինած ըլլալ Յակոբ հոն մատուռ մը։ 1890—1892ի՞ն։ Շատ անհաւանական կը գտնենք այդ, թէեւ ոչ անկարելի։ Զի Յակոբ Կէօշէյեան իր այդ վերջին տարիներուն քաշուած կ'ապրէր եւ հիւանդագին էր (Հմմտ. Մէնմ. Ախ., անդ)։ Հետեւաբար դժուար թէ այդ տարիներուն զբաղած ըլլայ մատուռ շինելով Արտանուշի մէջ։

Միւս կողմէ կը հաւաստուի թէ Արտանուշ՝ եկեղեցիէն զատ ունեցած է նաեւ մատուռ մը, բայց ուշ, յաջորդ տարիներուն։ 1912ին հոն այցելող մը հաւաստեց մեզ որ ինքը Արտանուշի մէջ եկեղեցիէն զատ՝ մատուռ մ'ալ տեսած է, բայց չի գիտեր թէ ո՞վ եւ ե՞րբ շինել տուած է մատուռը։

Արտանուշցի Պր. Միլտոնեանին (*Վենետիկ*) *եւ նամակով մ՚այս մասին հարցում մը ըրինք եւ նա եւս պատասխանեց թէ* «Արտանուշի քարերն անգամ կը յիշեմ, *բայց* մատրան մը գոյութիւնը — այդ մութ է»։

*Հետաքրքրական է այս* մատուռ շինելու *պարագան*։ *Յակոբ Կէօշէյեանի միւս դուստրը*՝ Տիկ. Պերճուհի (*ծնած* 1866*ին*), *որ այսօր ողջ է՝ ինձ համառօտ տեղեկագրութիւն մը ղրկած է, ուր կը շեշտէ թէ Յակոբ Կէօշէյեանի* մեծ հայրը (*նահապե՞տը*) Տէվլէթ (*Տէօվլէթ*) Հին Նախիջեւանէն *էր*, *ուր* «եկեղեցի մը կայ *եւ* Հանեան եպիսկոպոս *տեսած է որ* դրան վրայ գրուած է *թէ* Կէօշէօղլուէն շինուած է»։ — *Դժբախտաբար ի վիճակի չենք ստուգելու ո՛չ մին եւ ոչ միւսը. Նախիջեւան՝ Ատրպէյճանի մաս կը կազմէ, իսկ Արտանուշ՝ Թուրքիոյ կը վերաբերի*։

## 2. ԳԵՐԴԱՍՏԱՆԻ ՆԱՀԱՊԵՏԸ ԵՒ ԱՆՈՒԱՆԱԿՈՉՈՒՄԸ — Ե՞ՐԲ ՊՈԼԻՍ ԱՆՑԱԾ ԵՆ

*Ա. Տիկ. Մարիամ Նազլը Կորինալդիէն ստացած էինք վերոյիշեալ պատմութիւնը իրենց ծագումի մասին, ուր յիշուեցան նաեւ անուններ արդէն* 1600*ի ատեններէն*։ *Սակայն անդրագոյն լուսաբանութիւն մը ստանալու յոյսով նամակ մը ուղղեցինք Տիկնոջ՝ յատկապէս հետապնդելով թէ ի՞նչ*

եղած է իրենց մէջ աւանդական կարծիքը իրենց նահապետի անուան եւ Գերդաստանի յորջորջումի մասին: Տիկինը կը պատասխանէր 1955 Սեպտ. 3ին. Voici, ce que je peux vous dire en plus de ce que vous aurez trouvé dans mes mémoires que l'Abbé Nalbantian vous a fait parvenir: — Mon arrière grand père (est) Agop Keutché oglou, venu en 1760 de Nahicévan à Constantinople avec sa famille, avec un prêtre et une religieuse (marabét) comme gouvernante à ses enfants.

Գերդաստանի ծագումը Հին-Նախիջեւանէն եւ նահապետի Յակոբ յորջորջումը կը հաստատէ նաեւ Տիկ. Պերճուհի Գույումճեան փաշա, որմէ երկրորդ տեղեկատուութիւն մը ստացած ենք Գեր. Գրիգոր Վ. Պետրովիչի միջոցաւ, ուր կ'ըսուի. — «Ծագումը՝ Նախիջեւանէն. Նախահայրնին՝ Յակոբ»:

Յակոբ է նաեւ Պոլսոյ Հայ Կաթ. Պատրիարքարանի Դիւանին համեմատ Գերդաստանի նահապետը:

Հոս ընելու ենք սակայն զանազանութիւն մը. — Ուրի՛շ բան է ամբողջ Կէօշէյեան Գերդաստանի նախահայր նահապետը եւ ուրիշ բան որեւէ Կէօշէյեան ճիւղի կամ տոհմի մը նախահայր նահապետը: Երբ Տիկ. Մարիամ, Տիկ. Պերճուհի եւ Պատրիարքա—

րանի Դիւանը Յակոբ մը կը ճանչնան Կէօշէյեանց իբրեւ նախապետ՝ ատիկա ըսել չէ թէ ամբողջ Կէօշէյեան Գերդաստանի նախապետ ընդունելու ենք Յակոբ Կէօշէ Օղլուն :

Յակոբ Կէօշէ նախահայրն է Կէօշէյեաններու տոհմի մը, որուն սերունդն են երկու քոյրեր — Տիկ· Մարիամ եւ Տիկ· Պերճուհի : Ո՞վ էր սակայն ամբողջ Կէօշէյեան Գերդաստանի նախահայր նախապետը :

— Այս հարցումին վճռական պատասխան մը տալու համար չունինք ամուր եւ ապահով կռուան մը : Մեր պրպտումները չկրցան ձեռք բերել չօշափելի ապացոյցը, որ անհերքելի փաստերով մատնանիշ ընէր Կէօշէյեանց ընդհանուր նախապետը : Կարեւոր է այս ուղղութեամբ հետազօտութեան համար նկատի առնել գրաւոր հնագոյն յիշատակութիւնը Կէօշէյեան անուան : Ըսել կ'ուզենք թէ կայ հին գրութիւն մը, որ կը վկայէ թէ Կէօշէյեան Գերդաստանը դեռ Պոլիս չփոխադրուած՝ արդէն բազմացած ու ճիւղեր արձակած էր : Այդ ճիւղերէն մին — անծանօթ իր նախապետով — ԺԸ· դարուն սկիզբը կամ գուցէ աւելի առաջ Պոլիս փոխադրուած ըլլալով՝ Պոլսոյ մէջ ունեցած էր ամուսնական կապեր եւ իր փեսաներէն մին 1746ին մեռած եւ Հայ Կաթողիկէներու հին գերեզմանատան մէջ Բերա–Բանկալթի թաղուած էր : Ահա ատոր ապացոյցը ·

Այս է տապան հան
գստեան Գէօչէկ Օղլուի
փեսայ Պաղճի Օղլու
Նիկտեյու տիացու կար
ապետին որ փոխեցաւ
ի կեանս թվ. ՌՃՂԷ.
(1746)

(Հ. Յակոբ Ծ. Վ. Քոսեան, Գերեզմանատուն կաթ. Հայոց Կ. Պոլսոյ. Վիեննա 1931, էջ 21):

Զունինք, այո՛, ամուր եւ ապահով կռուան մը Կէօչէյեան Գերդաստանի նախապետը մատնանիշ ընելու համար: Բայց ունինք կռահում մը — ո՛չ առանց հիման — գոնէ հաւանական համարելու անձ մը, անուն մը իբրեւ հնարաւոր նախապետը Կէօչէյեան Գերդաստանի: Այդ անձն է Տէվլէթ-Տէօվլէթ: — Անունս յիշուած է Յակոբ Կէօչէյեանի աղջկան՝ Տիկ. Պերճուհիի կողմէ, որ ներկայիս ապրող ամենահին Կէօչէյեանն է: Տիկ. Պերճուհի, ինչպէս տեսանք վերը՝ իր քրոջ՝ Տիկ. Մարիամ Նազըրի հետ եւ Հայ Կաթ. Պատրիարքարանի Դիւանին համեմատ իրենց Տոհմի նախահայր կ՚ընդունի Յակոբ Կէօչէ Օղլուն: Տիկ. Պերճուհի ղրրկած է մեզ (1955 Յունիս 5ին) ուրիշ գրութիւն մ՚ալ, որուն մէջ կ՚ըսուի. «Յակոբ Կէօչէ Օղլուի (հայր Տիկ. Պերճուհիի) հայրը՝ Անտոն է, իսկ մեծ հայրը՝ Տէվլէթ (Տէօվլէթ) կը կոչուի»: Հոս «մեծ հայր»ը

չի կրնար պապ իմաստով ըսուած ըլլալ, քանի որ Տիկ. Պերճուհի ըսած էր առկէ առաջ թէ իրենց պապն է Յակոբ Կէօչէ Օղլու: Հետեւաբար «Տէվլէթ–Տէօվլէթ»ը կրնայ ըլլալ իրենց նախապետը: Տէօվլէթ անունը Կէօչէյեանց մօտ անծանօթ եւ անսովոր անուն մը չէ: Ինչպէս տեսանք գրութեանս սկիզբը՝ Տիկ. Մարիամ Նազլըի համեմատ Անտոն Կէօչէ ԺԸ. դարու սկիզբները կ՚ամուսնանայ Տիրուհի Տէօվլէթի հետ:

Բ. Ի՞նչ է Գերդաստանիս անուանակոչումը: — Ինչպէս տեսանք վերը՝ գրաւոր հնագոյն վկայութիւնը անուանակոչումիս կը գտնենք Պոլսոյ Բերա–Բանկալթիի հին գերեզմանատան շիրմաքարերուն վրայ փորագրուած սա՛ ձեւով. «Քօչէկ Օղլու» (Հ. Յ. Քօսեան, անդ):

Այս «Քօչէկ» բառը կրնայ «Կէօչէյեան»ի հնագոյն, սկզբնական ձեւն ըլլալ: Սակայն աւելի հաւանական է որ սխալմամբ միայն «օ»ով փորագրուած ըլլայ, փոխանակ «էօ»ի (Քէօչէ, Կէօչէ), ինչ որ յետագային գոյութիւն ունեցող միակ ձեւն է անունիս: Այդ շիրմագրին մէջ կը նշմարուի ուրիշ սխալագրութիւն ալ. օրինակ՝ «տիացու», փոխանակ ըլլալու «տիրացու»:

1800էն սկսած հին գրութիւններու մէջ «Կէօչէյեան» յորջորջումը գրուած կը գտնենք սա ձեւերով. «Քէօչէ օղլու», «Քէօչէկեան» (Դիւ. Վիեննա. Մխիթ. 1802 Յունիս

19, *Օգոստ.* 25)․ «Կէօչէֆ *Անտոն*», «*Յարութիւն* Կէօչէֆեան (*Յ. Անկէրեան*, *Պատմ.*, 1868, *էջ* 23 *եւ* 41)։ 1830*ական թուականներուն*՝ «Կէօչէ *Ջատէ*», «Կէօչէեան» (*Հ. Ս. Սրապեան*, *Ս. Յակոբ Ազգային Հիւանդանոց*, *Վիեննա*, 1915, *էջ* 28, 31)։

*Ի՞նչ է իմաստը այս բառին*։ — Կէօչէ *կամ* ֆէօչէ *տաճկերէն բառ է եւ կը նշանակէ* փողոց, հրապարակ (*Տե՛ս Հ. Յակովբոս Վ. Պօղաճեան*, *Համառօտ բառարան Տաճկերէն-Հայերէն*․ *Վիեննա* 1858)։ *Իսկ* ֆէօչէկ *կամ* կէօչէֆ *կը նշանակէ* եղբայր, ծառայ *եւ* կաֆաւիչ (*Անդ*)։

Գ. Ե՞րբ Պոլիս փոխադրուած են. — *Նկատի առնելով այն իրողութիւնը որ Կէօչէյեանք* 1746*ին* Պոլսոյ հնագոյն գերեզմանատան մէջ թաղուած փեսայ *ունին*՝ *հաւանական կը դառնայ ընդունիլ թէ առկէ աւելի հին տապանագրեր ալ ունեցած ըլլալու են*։ *Գիտենք այլուստ թէ հնագոյն տապանաքարերը ուրիշ տեղ փոխադրուած ու շինութիւններու ալ գործածուած են*։ *Որով անհնարին դարձած է որեւէ ստուգումներ կատարել այդ ուղղութեամբ*։ *Բայց այդ իրողութիւնն ալ բաւական է ենթադրել տալու թէ Կէօչէյեաններէն մաս մը* արդէն 1700ի առենները, *եթէ ոչ աւելի կանուխ*, Պոլիս անցած էր *կա՛մ վերջնականապէս հոն հաստատուելով եւ կամ գործով ու վերադառնալով*։ *Թէ ո՞վ էր եւ քանի՛ հոգի էին այդ ատեն Պոլիս անց–*

նողները — չունինք որեւէ չօշափելի փաստ։ Ամէն պարագայի՝ Պոլիս անցնող առաջին Կէօչէյեանները Յակոբ Կէօչէ Օղլուի Տոհմէն չեն կրնար ըլլալ։ Ո՛չ ինքը Յակոբ Կէօչէ եւ ոչ ալ իր որդին Անտոն Պոլիս անցած են 1700ի առենները։

Ըստ Տիկ. Պերճուհիի՝ իր պապը՝ Անտոն Կէօչէ Օղլու 1730—1740ին Պոլիս անցած է։ Մինչ ըստ Պատրիարքարանի Դիւանին՝ Յակոբ Կէօչէ Օղլուի որդին՝ Անտոն 1773ին Պոլիս ծնած է։ Իսկ ըստ Տիկ. Մարիամ Նազլըի՝ իրենց պապին հայրը՝ Յակոբ Կէօչէ Օղլու Պոլիս փոխադրուած է 1760ին։ Վերջին կարծիքը շատ հաւանական է, քանի որ Յակոբ 1773ին Պոլսոյ մէջ զաւակ կ'ունենայ։

### 3. ԿԷՕՉԷՅԵԱՆ ԵՐԿՈՒ ԶԱՏ ԶԱՏ ՏՈՀՄԵՐ — Ա. ՏՈՀՄԱԳԼՈՒԽ ՔԷՕՉԷՔ ՅԱԿՈԲ ԵՒ ԻՐ ՍԵՐՈՒՆԴԸ

Ուսումնասիրութեանս ընթացքին մեր կատարած պրպտումներու արդիւնքով այն եզրակացութեան յանգեցանք որ Կէօչէյեան Գերդաստանը ունեցած է երկու զատ զատ Տոհմեր իրենց ուրոյն Տոհմագլուխով կամ Նախահայրով։ Երկու Տոհմի գոյութիւնը յիշատակած չեն իրենց տեղեկատուութեանց մէջ Տիկ. Պերճուհի եւ Տիկ. Մարիամ Նազլը, գուցէ իրենց անծանօթ ըլլալով եւ կամ անդրադարձած չըլլալով։ Իսկ Պատ–

*րիարքարանի տուած ցանկին մէջ յայտնի կը տեսնուի* երկու զատ զատ Տոհմերու գոյութիւնը, *Թէեւ ցանկը մեզի ղրկող Գեր. Վարդապետը* երկրորդ Տոհմին *համար սա դիտողութիւնը աւելցուցած է.* «Ուրիշ Köcekoğlu, *որ մեր Դիւանին համեմատ* ոեւէ կապ չունի վերոյիշեալին հետ»: *Թէ ի՞նչպէս եղած է որ Պատրիարքարանի մկրտութեան, պսակի եւ մահուան արձանագրութեանց միջոցին* միեւնոյն Կէօչէյեան Գերդաստանի երկու Տոհմերու անձերուն *արձանագրութիւնը զատ զատ կատարած ատեն՝* անոնց իրարու հետ ունեցած ազգականական կապը անտես առնուած կամ անյիշատակ թողուած է – *չենք գիտեր: Սակայն մեր ուսումնասիրութեան համար կը կարծենք թէ որեւէ նշանակութիւն չունի այդ պարագան: Զի ունինք ձեռքի տակ* բաւարար ապացոյցներ *այնտեղ արձանագրուած երկու Տոհմերու միջեւ եղած* ազգականական կապը եւ միեւնոյն Գերդաստանի վերաբերելու իրողութիւնը փաստելու: *Պատրիարքարանի տուած այդ երկու Տոհմերու ցանկերուն մէջ յիշուած են* նախ Յակոբ Կէօչէ Օղլուի *Տոհմի անձերը՝ իրենց գլուխ ունենալով* Յակոբ Կէօչէ Օղլուն, *յետոյ տրուած է* երկրորդ Տոհմի ծառը — *ըստ մեզ թերի եւ պակասաւոր — իրեն սկիզբը ունենալով* Խաչատուր Կէօչէ *մը՝ իբրեւ* Տոհմագլուխ: *Հետեւաբար Կէօչէյեան Գերդաստանը ունեցած կ'ըլլայ* երկու զատ

զատ Տոհմեր՝ Յակոբ *եւ* Խաչատուր Տոհմագլուխներով : *Թէ այդ երկու Տոհմերը* իրարու կը վերաբերին, *իրարու* օտար չեն *եւ* մէկ Գերդաստանի անձեր *եւ հետեւաբար իրարու* ազգական *են՝ անկէ կը տեսնուի որ* 1. Յիշատակութիւններու ժամանակ իրարու հետ քովէքով են (*Տե՛ս «Աղքատասիրաց եղբայրութեան» անդամացանկը՝* 1864*ին*, *ուր կը* յիշուին միասին *Ա. եւ Բ. Տոհմի վերաբերող անձեր, այսպէս. Կէօչէյեան Թագուհի, Կէօչէյեան Իսկուհի* (Ա. Տոհմ), *Կէօչէյեան Խաչատուր* (Բ. Տոհմ), *Կէօչէյեան Սոփի* (*Ա. Տոհմ*). 2. *Մէկուն հիւանդութեան պարագային՝ միւսը իբրեւ իրեն անձը՝* հոգ կը տանի *եւ դարմանումի պարագային՝* մին միւսին համար շնորհակալութիւն կը յայտնէ *եւ եթէ* մին մեռած է՝ *միւսը* պատարագ մատուցանել կու տայ (*Տե՛ս Դիւ.* 1867 *Դեկտ.* 20). 3. *Պոլսոյ մէջ գետին կայ, որուն* տէրն են թէ՛ Ա. Տոհմի եւ թէ՛ Բ. Տոհմի անձեր (*Տե՛ս Դիւ.* 1856 Յունուար 10), *որմէ կը տեսնուի թէ գետինը գնուած է* հասարակաց դրամով *եւ* միեւնոյն ազգական անձերուն կը վերաբերի :

*Յաջորդ էջերուն մէջ նախ պիտի ներկայացնենք Կէօչէյեան Գերդաստանի* Ա. Տոհմի *պատմութիւնը, որմէ վերջ պիտի գրադինք* Բ. Տոհմի *ուսումնասիրութեամբ* :

*Ա. Կէօչէյեան Գերդաստանի մեծադղյն եւ*



*տնուանի* Տոհմը *կը կազմէ այն, որ իրեն* նախահայր *ունի* Քէօշէկ Օղլու Յակոբ: *Զունիք ծանօթութիւն իր* ծննդի *եւ* մահուան *թուականի, ինչպէս նաեւ իր ամուսնոյն մասին: Ծանօթ է միայն որ առանց ընկալոյքը Պոլսոյ* Ենիգափու թաղն *էր, ուր կը վախճանի Տիկ. Յակոբ Քէօշէկ* — «Սկեսուր» *Տիկ. Տիրուհի Կէօշէյեանի* — 1831 *Փետր. ի սկիզբը եւ մեր Հ. Անտոն Դանեան,* ամբողջ Գերդաստանի խոստովանահայր՝ *փառաւոր թաղում մը կ'ընէ (Դիւ.* 1831 *Փետր.* 10):

*Տիկ. Նազլը Մարիամի համեմատ իր նախահայրը՝* Յակոբ Քէօշէկ Օղլու 1760*ին Հայաստանի* Հին-Նախիջեւանէն Պոլիս *փոխադրուած է ընտանիքով, տան քահանայով եւ տան մայրապետով մը, որ իր* զաւակնե-րուն *դաստիարակն է: Որո՞նք էին Յակոբի* զաւակները: — *Թէ՛ Տիկ. Պերճուհի եւ թէ Տիկ. Մարիամ* միակ *զաւակ մը կը յիշեն իրենց նախահօր Յակոբէն* — Անտոն: *Իսկ Պոլսոյ Պատրիարքարանի Դիւանը ունի* Սեղբակ *եւ* Անտոն: *Առաջինը ծնած է* 1769*ին եւ ուրիշ ամէն բան անծանօթ: Անտոն ծնած է* 1773*ին եւ ամուսնացած* Պետրոսի դուստր Տիրուհիի հետ: *Տիկ. Պերճուհի կու տայ նաեւ մականունը իր մեծ մօր՝* Լազեան *Տիրուհի:*

*Այս* Անտոնը *նշանաւոր դէմք մը եղած է: Ունեցած է բարձր պատիւ եւ պաշտօն*





թուրք կառավարութեան մէջ։ Եղած է մահրիմ անձ մը Սուլթան Մահմուտ Բ.ին, որ յաճախակի այցելութիւն կու տայ Անտոնին՝ տուր Չէնկէլ Քէօյի մէջ ունեցած ագարակը, ուր Սուլթանին համար վերապահուած Քէօշք մը միշտ տրամադրելի կը մնար։ Սուլթանը իր սիրելի եւ հաւատարիմ ծառային արժանիքները գնահատելով՝ Փէրմանով ազնուականութեան տիտղոս կը շնորհէ թէ՛ Անտոնի եւ թէ անոր սերունդին, որոնք իրաւունք կը ստանան կրելու Պէյ տիտղոսը։

Տիկ. Մարիամ Նազըր կը գրէ. «Սուլթանը եւ իր ընտանիքը այնքան կը մտերմանան Անտոնի ընտանիքին հետ որ յաճախ ամառները կ'երթային Անտոնի ամառանոցը եւ հոն պզտիկները իրարու հետ կը խաղային եւ կը զբօսնուէին, եղբօր պէս։ Անտոն Բոսֆորի բարձունքին վրայ, հոն՝ որ կը նայի դէպի Ասիա, այսինքն՝ Չէնկէլ-Քէօյի մէջ հրաշալի հայլի մը շինած էր, հոյակապ պարտէզներով։ Հո՛ն է որ կը խաղային։ Այս բարեկամութեան շնորհիւ Անտոնի աղջիկները, այսինքն՝ Օրիորդներ Մարիցա, Խսկուհի, Թագուհի, Երանիկ եւ Սոֆիա, որոնք յետոյ Սուլթանի Պալատական Տիկիններ կը դառնան, միշտ ներկայ պիտի ըլլային՝ ամէն անգամ որ Սուլթանը խնջոյք, հարսանիք եւ կամ թագաւորութեան հանդէս ունենար։ Երբ 1870ին Էօժէնի կայսրուհին (Ֆրանսա) ընկերացած Նապոլէոն Գ.ի Սուէզի բացումին

*ներկայ կ'ըլլայ՝ իրեն կ'ընկերանար իբրեւ պալատական* Տիկին *Անտոնի վերոյիշեալ աղջիկներէն մին մինչեւ* Ալէմ-Տաղի *պալատը*: *Ստուգի՛ւ ալ, այս շրջանին* Պոլսոյ Հայ ընտանիքները կը ներկայացնէին Ընկերութեան ազնուագոյն մասը քաղաքականութեան, գիտութեան եւ տնտեսութեան մէջ»:

*Անտոն ունէր պաշտօն մասնաւորապէս կայսերական* փողերանոցին մէջ եւ 1827–8*ին այդ պաշտօնին մէջ կը գտնուէր՝ երբ* Տիւզեանց *կապակցութեամբ կ'աքսորուի ինքն ալ: Իբրեւ անձնական գործ՝ եղած է* շատ *մեծ վաճառական: Տիկ. Պերճուհի կը գրէ որ* Սուլթանին շալ ծախած է:

*Անտոնի անձնական գործը եղած է նաեւ* երկրագործութիւնը: *Ունեցած է բազմաթիւ եւ ընդարձակ արտեր ու կալուածներ եւ փարթամ հարստութիւն: Իր մնայուն բնակութիւնը եղած է* Թոփգափու:

*Անտոն աչքառու դեր ունեցած է նաեւ* Հայ Կաթ. Հասարակութեան մէջ: *Իբրեւ այդպիսի ինքն ալ մասնակից եղած է* 1827–1829*ի հալածանքին ու աքսորին*: 1828 *Փետր.* 16–18*ին կը բանտարկուի* «Բէօչէկ Օղլու Անտոն» *ուրիշ Հայ Կաթողիկէ երեւելիներու հետ եւ ապա կ'աքսորուի* «Թիրէ՝ անդր քան Զմիւռնիա ... եւ ընտանեաց նոցա տուաւ ժամանակ 20 աւուրց, զի պատրաստեսցեն եւ վաճառեսցեն զիրս իւրեանց, այլ ոչ զանշարժականս, զի այնք եղանեն օրրաօրէ յանուր–

դրս» (*Դիւ. Վիեն. Մխիթ.* 1828 *Փետր.* 25), *կը գրէ մեր* Հ. Անտոն Դանեան, *ժամանականից միակ անձը, որ կրցած էր* մնալ Պոլիս: 1829 *Նոյ.* 6*ին* Իթլախ (*ազատութեան թուղթ*) *կ'ելլէ* 30 *հոգւոյ դարձին համար, որոնց մէջ են Կէօշէյեանք* (*Նամակ Հ. Անտոնի* 1829 *Նոյ.* 10): *Հ. Անտոն՝ Հ. Միքայէլին* (*Ադրիանուպոլիս*) *ուղղած նամակին մէջ* 30 *հոգւոյ դարձին համար ելած* ֆէրմանի *վրայ խօսելով՝ կ'ըսէ. «...այս ինչ յայտ է թէ միջնորդութեամբ* դեսպանի Գաղղիոյ լինի՝ *որ ինչ լինի. սակայն ամենաչարն* (*Խալիպ Յարութիւն*) *զոգցես* երեք հազար քսակս դոշից[1] ծախսեաց *յաւուրս յայսոսիկ* առ ի ձեռամբ ունել եւ զայն փոքր շնորհսն. զոր դուռն *տանէ, զի ի ձեռս նորա բաժանին ֆէրմանք եւ բառ կամաց նորա են»* (*Դիւ.* 1829 Նոյ. 10):

*Հ. Անտոն չի յիշեր թէ քանի՞ հոգի էին Կէօշէյեանք այս աքսորի միջոցին: Միայն ինքը Անտո՞ն՝ թէ նաեւ իր ընտանիքը աքսորուած է: Բարեբախտաբար ուրիշ աղբիւրէ կ'իմանանք թէ Անտոն* միակ չէր *այս աքսորի ժամանակ:*

*Այո՛, Անտոն* իր ամբողջ ընտանիքով *աքսորուած է:* Հ. Գրիգորիս Վ. Գալէմքեարեանի *ձեռագիրներուն մէջ կը գտնենք հետեւեալ տողերը, երբ կը գրայի Տիգեանց*

---

[1] *Մէկ քսակը՝* 500 *ղուրուշ է, հետեւաբար* 3000 *քսակը կ'ընէ* 1.500.000 *ղուրուշ կամ՝* 15.000 *ոսկի:*

*պարծանքի պատմութեամբ եւ կը յիշէ* 30 աքսորեալները. «*Անոնք գրեթէ ամբողջ* փողերանոցի պաշտօնեաներն էին, *ինչպէս* Պէօչէք Օղլու Անտոն ընտանեօք, *Անկէր Օղլու Անտոն, Փիրթուպալ Յովսէփ...*» (*Զեաալիր Հ. Գրիգորիսի*):

*Կէօշէք Անտոն, բառ Անկէրեանի, մին է 1830ին բռնուած Հայ Կաթողիկէ Համայնքի անդրանիկ Ազգային Վարչութեան* տասը երեսփոխաններէն, *որոնք Իշխանապետ Յակոբ Զէլէպի Տիւզեանի հետ պատասխանատու էին Բ. Դրան առջեւ Ազգին կողմանէ՝ ազգային ամէն գործերուն համար: Կ՚արժէ տալ այդ ցանկը, ուր Կէօշէեան Տանը գլուխ է կանգնած.*

«Կէօշէք Անտոն Աղա, *Պիլէզիկճի Պօղոս Աղա, Խլըտավէրտի Պետրոս Աղա, Քիւճիւ Կէջէն Աղա, Թընկըր Կ. Անտոն Աղա, Սարաֆեան Մելքոն Աղա, Այնթապեան Գէորգ Աղա, Մըրրըյեան Գրիգոր Աղա, Պօղոսճա Խաչատուր Աղա եւ Արդար Յակոբ Աղա*» (*Յ. Անկէրեան, Պատմութիւն. Տփղիս* 1868, *էջ* 23):

*Անտոն եւ իր Տիկինը*՝ Տիրուհի՝ ազգային բարերարներ են: *Նախ Անտոն* տուն մը կը շինէ *Հայ Կաթ.* Ս. Յակոբի Հիւանդանոցի *հողին վրայ եւ* կը նուիրէ Հիւանդանոցին՝ իբր մշտնջենաւոր եկամուտ (*Հ. Սահակ Վ. Սրապեան, Ս. Յակոբ Ազգ. Հիւանդանոց. Վիեննա* 1915, *էջ* 28): *Իր մահէն վերջ՝ Տիկ.*

Տիրուհի կը շարունակէ Ս. Յակոբի հողին վրայ բարձրացնել ուրիշ տուներ ալ։ Տիկ. Պերճուհի կը հաստատէ որ իր մեծ մայրը՝ Տիկ. Տիրուհի է որ «Ս. Յակոբի տաճարուն մեծ մասը կանգնել տուած է» (Նամակ Տիկ. Պերճուհիի)։

Ս. Յակոբի շուրջը շինուած քարաշէն շէնքերը 45 են, «որոնց ամէն մէկին ճակատը հայերէն արձանագրուած է նուիրատու բարերարներուն անունները Աղաբեան, Քէօչէյեան եւ ուրիշներ» (Տօքթ. Վահրամ Յ. Թորգոմեան, Երեմիա Չէլէպի, Բ. Վիեննա 1932, էջ 626)։

Անտոն Կէօչէք կը վախճանի 1832ին եւ կը թաղուի «Բանկալթիի՝ Ս. Յակոբ Գերեզմանատունը որ այսօր գրաւուած ու շէնքերու հող է դարձած», կը գրէ Տիկ. Պերճուհի։ Ո՛չ Կէօչէքեաններու մեծագոյն Տոհմի Նահապետը՝ Յակոբ Կէօչէ Օղլուի եւ իր տիկնոջ եւ ոչ ալ իրենց որդւոց՝ Սեդրակի եւ Անտոնի շիրիմները մնացած են։

## 4. ՔԷՕՉԷԿ ՕՂԼՈՒ ՅԱԿՈԲԻ ԵՐՐՈՐԴ ՈՐԴԻՆ ԵՒ ՄԷԿ ԱՂՋԻԿԸ

I. Ինչպէս տեսանք՝ Տիկ. Պերճուհի եւ Տիկ. Մարիամ միայն մէկ որդի կը ճանչնան իրենց նահապետ Քէօչէկ Օղլու Յակոբէն — Անտոն։ Իսկ Պատրիարքարանի Դիւանին ծանօթ է նաեւ երկրորդ որդի մը — Սեդրակ։

Կայ տակայն երրորդ որդի մ՚ալ — Տէօլվէր, որ անծանօթ եղած է թէ՛ Տիկ. Պերճուհիի եւ Տիկ. Մարիամի եւ թէ Պատրիարքարանի ցանկին:

Տէօլվէր անուան կը ծանօթանանք մեր վիեննայի Դիւանի հնագոյն նամակներէն: Ինչպէս ծանօթ է՝ ԺԸ. դարու վերջին քառորդին սկիզբէն Տրիեստի մէջ ունէինք աշխարհիկ աշակերտներու Գիշերօթիկ վարժարան մը, որ իր գոյութիւնը պահած էր կերպով մը գրեթէ մինչեւ Միաբանութեան Տրիեստէն վիեննա փոխադրութիւնը, որ սկսած է 1810 Հոկտեմբեր 3ին: Արդ, այդ վարժարանի աշակերտները Պոլսէն կը ղըրկուէին: 1802ին Պոլսոյ մեր Հայրերէն մին Տրիեստի վարդապետներուն գրելով՝ կ՚իմացնէ. «Պատանի մի չափահաս եւ որդի Քէօչէ Օղլու Տէօլվէրի, որոյ ծնողքն ոչ միայն փափաքին առաքել զնա ի վանս Թրեստու, այլ նաեւ աճապարեն փութով առաքել զնա առանց սպասելոյ» (Դիւ. 1802 Յունիս 19): Իսկ քիչ յետոյ կը գրեն Պոլսէն Տրիեստ. «...չուեաց աստի Գրիգոր պատանին Քէօչէկեան ... դարբեչէքն նորա կանխիկ վճարմամբ, գրեմք եւ ծանուցանեմք ... քանզի զպատանիս զայս ո՛չ ինքնայօժար, այլ յորդորմամբ ծնողացն եւ այլ բարեկամաց խրեանց յօժարեցուցեալ եւ առ օրին յանկարծ եղեալ են ի նաւ եւ ուղարկեալ, զի մի՛ յամեցմամբն յետս նահանջեսցի»

(Դիւ. 1802 Օգոստ. 25)։ Միեւնոյն օրը Պոլ-սէն մեր Հ. Մեսրոպ վ. Սարեան եւ նամակ մը կ'ուղղէ Տրիեստի Մեծաւոր՝ Հ. Անտոն վ. Իւշգարտաշեանի, տեղեկագրելով. «Ի վերջին Օգոստոսի չուեաց աստի Գրիգոր պատանին Թէօչէկեան... Գրիգոր եղբայր մեր Ծիւքիւրեան դեռ չէ վճարեալ պարտեացն իւր ընդ հօր նորա Տէօվէթ Աղայի» (Դիւ. 1802 Օգոստ. 25)։

Ուստի՞ց, արդեօք, յայտնի կ'ըլլայ թէ այս Տէօվէթ Թէօչէքեանը Թէօչէք Օղլու Յակոբի եղբայր որդին է։ — Տրիեստի Մխիթարեան վարժարանի վերակացու Հ. Պօղոս Մուրատեան (ծնեալ Ճամճեան) նամակով մը խնդրած էր Գրիգոր պատանիին ծննդեան թուղթը։ Տէօվէթ Աղա նամակ մը գրելով Հ. Պօղոսին՝ նախ կ'իմացնէ անոր թէ ինքը Տէօվէթ ազգական է Հ. Պօղոսին. «Ձերդ արժանակցութեամբ եւ մերձաւորութիւն ունիմք ընդ Հայրութեանդ» (Դիւ. 1803 Փետր. 24)։ Յետոյ իր որդւոյն ծննդեան թուղթի նկատմամբ բացատրութիւնը տալով՝ կը գրէ. «Յակոբի որդի Տէօվէթի որդի Գրիգոր Թէօչէքեանց, ծնեալ ի Թուին Քրիստոսի 1786 ի Սեպտեմբեր 9» (Դիւ. 1803 Փետրուար 24)։

Ուրեմն՝ «Յակոբի որդի Տէօվէթ Թէօչէքեանց» 1803ին։ Ո՞վ կրնայ ըսել այս «Յակոբ Թէօչէքեանց»ը, եթէ ոչ Կէօչէյեան Գերդաստանի Ա. Տոհմագլուխ «Թէօչէկ

*Օղլու* Յակոբ»*ը*։ *Որով «Տէօրվէթ» կ'ըլլայ իր* երրորդ որդին, *այսինքն* — Ատոմ, Սեդրակ, Տէօրվէթ։

*Այս* Տէօրվէթի մասին *կը գտնենք հետեւեալ ծանօթութիւնները մեր* Դիւանի *մէջ.*

1. *Տէօրվէթ* կրօնասէր *եւ* բարեպաշտ *անձ մըն է, որ կ'ուրախանայ «լսելով ... զմարդերն մեր որդեկին* յերկիւղն Աստուծոյ առ ճանաչել զսէրն Աստուծոյ եւ զպարտաւորութիւն առ Աստուած, *առ մեծաւորս, առ խրատիչս եւ առ ծնողս...»* (*Դիւ.* 1803 *Փետր.* 24)։

2. *Տէօրվէթ Կէօչէ Օղլու* վաճառական *է, իր գլխաւոր գործն ըլլալով* «Քիշմիրի շալի» *առեւտուրը, ինչպէս իր եղբայրը՝ Անտոն, որ նոյնպէս* շալի *վաճառական էր*։ *Տէօրվէթ հայթայթիչներէն մին էր* Ղափուտան Հիւսէյին փաշային, *որ տարեկան* 5–600 թոփ *կ'ապսպրէր թէ՛ իր պալատին եւ թէ* արքունական նաւերուն *համար*։ Թոփը *կ'արժէր* 4–5000, *մինչեւ* 6000 դուրուշ։ *Փաշային մեռնելէն* (1800) *վերջ* շալերուն *գինը անհամեմատ կերպով կ'ինայ*, 6000 *դուրուշնոցը*՝ 2000, 5000 *դուրուշնոցը*՝ 1500 *կ'ըլլայ եւ առնող ալ չէր գտնուեր*։ *Անոնք որ շատ ապրանք ունէին՝ կը կործանին*։ *Տէօրվէթ անոնցմէ մին էր, կը գրէ պոլսական նամակ մը* (*Դիւ.* 1805 *Մարտ* 26)։

3. *Տէօրվէթի* ընտանեկան կեանքէն *ծանօթ են. ա*) *իր տունը* Օրթաքէօյ *էր. բ*) *կինը*

ամուսնացած էր. գ) ունէր «որդին», որուն դաս կու տար 1804ի ամառը Յովհաննէս վարդապետ. «Յայսմ ամի եղանակի ամառան Տէօվլէթ Ազայի տունը գնացի յՕրթաքէօյ առ ի վարժել զորդին», կը գրէ նոյն վարդապետը (Դիւ. 1804 Մայիս)։ Իր զաւակներէն միայն Գրիգոր ծանօթ է անունով, որ՝ ինչպէս տեսանք, ծնած է 1786 Սեպտ. 9ին եւ 1802ին մտած Տրիեստի մեր Գիշերօթիկ վարժարանը, ուսկից Պոլիս կը վերադառնայ 1805ին (Դիւ. 1805 Մայիս 4, 11)։ Տէօվլէթ ունէր աղջիկ մը, որ 1804ին կը պսակուի (Դիւ. 1804 Յունուար 24)։ — Անծանօթ է Տէօվլէթի եւ իր ընտանեաց մահուան թուականը։ Մեր կարծիքով Տէօվլէթ՝ Յակոբ Քէօչէկի անդրանիկն էր եւ իր անունը կը կրէր իր պապը, այսինքն՝ Կէօչէյեան Գերդաստանի նախահայր նահապետը։

II. Քէօչէկ Օղլու Յակոբ ունեցած է նաեւ աղջիկ մը, որ հարսնացած է Պէնկլեան-ներուն եւ ունեցած Անտոն անունով մանչ մը, որ 1802ին Տրիեստի մեր վարժարանի աշակերտ է եւ Տէօվլէթ Քէօչէյեան մեր Հ. Պօղոսին գրած նամակին մէջ կ'աւելցնէ. «Ողջունեմք զորդեակն մեր Գրիգորն եւ զքե-ռորդին մեր զԱնտոնն» (Դիւ. 1803 Հոկտ. 24)։ Այս «քեռորդի» բառէն կը հասկցուի թէ Տէօվլէթ քոյր մը ունէր, իսկ Քէօչէկ Յակոբ՝ աղջիկ մը։

## 5. ԱՆՏՈՆԻ ԵՒ ՏԻՐՈՒՀԻԻ ՍԵՐՈՒՆԴԸ

*Քէօշէկ Օղլու Յակոբի որդի* Անտոն *եւ իր Տիկինը՝* Տիրուհի *օրհնուած են* 10 *զաւակներով*, Յովսէփ, Մարիցա, Պետրոս (Բեդրակ), Պօղոս, Միքայէլ, Իսկուհի, Երանիկ, Թագուհի, Սոֆիա եւ Յակոբ: *Պատրիարքարանի Դիւանին մէջ արձանագրուած են միայն հետեւեալները.* Յովսէփ, Պետրոս, Պօղոս, Յակոբ, Միքայէլ, Երանիկ եւ Սոփի: Ամբողջ *ցանկը պահած է Տիկ. Մարիամ Նաղըր:*

*Տիկ. Մարիամ կ'ըսէ որ Անտոնի մահէն վերջ իր զաւակները բաժնուեցան Պոլսոյ զանազան թաղերուն մէջ. Յովսէփ՝* Գատըգիւղ, *Պետրոս՝* Օրթագիւղ, *Պօղոս՝* Բեբա, *Յակոբ՝* Թոփգափու, *եւ այլն: Ինչպէս պիտի տեսնենք՝ Պոլսոյ այլ եւ այլ անկիւններու մէջ ալ տուներ կամ ամառանոցներ շինած են յետոյ: Իրենց գլխաւոր աշխատանոցը* Ղալաթիա *էր, ուր Կէօշէյեանք* Կէօմրիւք Հաթթէսիի *վրայ* «Կէօշէ Օղլու Խան»*ը ունէին:* (*Յ. Գ. Փալագաշեան, Տեղագրութիւն Կոստանդնուպոլսոյ եւ շրջակայից եւ Յաւելուած Կ. Պ.* 1887, *էջ* 57):

*Այժմ խօսինք կարգաւ Անտոն Կէօշէի սերունդի մասին:*

1. Յովսէփ. — *Ծնած է* 1808*ին եւ ունեցած ազգային գործունէութիւն:* 1854*ին կը ներկայանայ Կէօշէյեան Գերդաստանի գլուխներէն մին եւ Ազգին գործերուն մէջ առաջ–*

նակարդ դեր կատարող անձ (Հմմտ. Յ. Ակըրեան, Պատմութիւն, անդ, էջ 359):

Թէեւ Կէօշկէյեանները Հասունեան խըն-դիրներու մէջ ընդհանրապէս անդինեւրուն յարած էին, սակայն 1875էն սկսած իրենց մէջ շարժում մը ծայր կու տայ դարձի եւ կատարեալ յարումի Հռոմի եւ անոր հաւա-տարիմ անձերուն: Մեր Հ. Մանուէլ Տէվրի-շեան կը գրէ Պոլսէն. «Զատկին խթման պա-տարագին Քէօշէք Յովսէփ էֆ. մեծ տղով ներկայ գտնուեցաւ՝ մէկալ կողմանէ զգուած ըլլալով» (Դիւ. 1875 Ապրիլ 27):

1836ին Կէօշէյեան Տունը մասնաւոր պատիւ մը ընդունած է Սուլթանէն: Թէ ի՞նչ էր այդ պատիւը եւ ո՞վ յատկապէս պատուը-ւողը՝ չկայ տուեալութիւն: Մեր Հ. Անտոն Դանեան, որ Կէօշէյեանց խոստովանահայրն է՝ նամակի մը մէջ ակնարկելով ուրախ լուրը տուած է սա լակոնական ոճով, նախա-տակ ունենալով յետոյ մանրամասնութեամբ գրելու. «Քէօշէյեանք պատուեցան յարքայէ, զորմէ գրեցից...» (Դիւ. 1836 Յուլիս 20): Յետոյ մոռցած է սակայն գրել:

Ինչպէս առհասարակ Կէօշէյեանք՝ նոյն-պէս անհատաբար Յովսէփ Կէօշէյեան մեծա-հարուստ մարդ եղած է: Բերա Աղանամին մօտ Կէօշէյեանք 2000 կանգուն մեծութեամբ գետին մը ունէին, որուն վրայ չորս կրպակ-ներ կային: Երկիրը կը վերաբերէր Կէօշէ-յեան Ընկերութեան, որոնց մէջ կը յիշուին

Յովսէփ Աղա, Յարութիւն եւ Յակոբ։ *Գետինը կ'արժէր* 650,000 *դուրուշ* (*Դիւ.* 1850 *Յունվ.* 10)։

*Յովսէփի բնակարանը* Գատրգիւղ *էր*։ *Հոս է որ* 1883 *Փետր.* 14*ին կը կնքէ մահկանացուն*։ *Յուղարկաւորութիւնը կը կատարուի Ս. Աստուածածին աթոռանիստ եկեղեցւոյ մէջ, Բերա* (Թէրճ. Էֆքեար, 1883 *Թ.* 1644)։ *Ծիշլիի գերեզմանատան մէջ Յովսէփի իր ընտանեկան դամբարանը ունի ս'ա մերատութեամբ.*

Ընտանիք

Յովսէփի Կէօշէյեան

(*Քօսեան*, *անդ*, *էջ* 79)։

*Կարճ, բայց լի խմաստով ու դամեար կը կարդանք իր մասին.* «...այր պատուական յոյժ» (*Դիւ. Վիենն. Մխիթ.* 1855 *Դեկտ.* 13)։

*Յովսէփ Կէօշէյեան ամուսնացած էր* Լիւսի (*Լուսիքա*) Տաւուտեանի (*եղբօրաղջիկ* Կարապետ Արթին Տաւուտ փաշայի) *հետ*։ *Տիկ. Լիւսի մեռած է* 1880 *Մարտ* 12*ին*, *որուն առթիւ նամակ մը կը տայ.* «*Յաւուրս յայսմիկ հանգեաւ ի Տէր* տիկին *Յովսէփ էֆ. Քէօշէեանց* Լուցիքա, *որ երբեմն դրօշակիրն էր ի մէջ կանանց Անդի կողմանն եւ յամայ ինչ հետէ* դարձեալ յայս կողմն *եւ մեռաւ ի ձեռն* Dr. Giov. *ժողովրդապետի եկեղեցւոյն Հոգւոյն Սրբոյ եւ յուղարկաւորեցաւ ծանու հանդիսիւ ի մերմէ կողմանէ*։

Գեր. Հոգեւոր Տէրն յետ դնալոյն ի գլխդող-ջէս ի տուն Պօղոս էֆ. իի Թէօչէյեան, վախ-ճանելոյ անդի, չոքաւ եւ առ եղբայր նորա Յակոբ էֆ. եւ բազում մեծարանօք ընկա-լեալ եղեւ յընտանեացն եւ ի Հ. Պօղոսէ Լի-բոնանեցւոյ» (Դիւ. 1880 Մարտ 10):

Յովսէփ եւ Լիւսի ունեցած են երեք մանչ եւ երկու աղջիկ. Անտոն, Գրիգոր, Յովհաննէս, Նեկտար եւ Սուրբիկ:— ա) Ան-տոն մեռած է տղայ մանուկ. մահուան թուա-կանը անծանօթ է: — բ) Գրիգոր եւ իր եղ-բայրը Յովհաննէս առաջին աշակերտներն էն Վիեննական Մխիթարեանց Պոլսոյ մէջ 1857ին բացած Գիշերօթիկ վարժարանին 9 գիշերօթիկներէն, ուր արձանագրուած են. Գրիգոր Թէօչէյեան, Յովհաննէս Թէօչէյեան̃, որդիք Յովսէփ Թէօչէյեանի (Նամակ Հ. Մանուէլ Տէվրիշեանի, 1857 Դեկտ. 16): Հ. Մանուէլ այդ նամակին մէջ կը գրէ Գեր. Պօղաճեանին. «Այն ունիմք եթէ օրհնու-թեամբ Տեառն եւ աղօթիւք Ձերովք ոչ միայն սոքա պարծանք լինիցին Միաբանութեանս, զի գրեթէ ամէնքէն մանկունք ընտիրք են, սրամիտք...» (Անդ.):

Գրիգոր եւ Յովհաննէս սովորական ու-սումէն զատ՝ մեր քով դաշնակի դաս ալ ա-ռած ըլլալով՝ 1858ի դպրոցական հանդէսի ժամանակ նուագած են թէ՛ առանձին եւ թէ à 4 mains (Դիւ. 1858 Օգոստ. 1):

Գրիգոր եւ Յովհաննէս յետոյ իրենց ու-



ԳՐԻԳՈՐ ԿԷՕՉԷՅԵԱՆ
(ՆՎԱՐԻՉ)

*ումը չարունակած են Պարիսի* Մուրատեան *վարժարանի մէջ, ուր գրկած է զիրենք իրենց հօրեղբայր՝* Յակոբ Կէօչէյեան՝ *ընկերացնելով Պոլսէն մեր Հայրերէն մին*: 1865*ին դեռ հոն էին* (*Դիւ*. 1865 *Յունիս* 2):

Գեղարուեստի սէրը, զոր արթնցուցած էր Պոլսոյ մեր վարժարանը Գրիգորի սրտին մէջ՝ *ծիլ արձակելով կը զարգանայ յետոյ՝ պարարտ հող գտնելով Գրիգորի մէջ, որ ապագային կը դառնայ տաղանդաւոր* անուանի նկարիչ մը: «*Կ'արտադրէ, կը գրէ Արմենակ Սագըզ*, 1876*ի տօնները եւ ուր Համտի Պէյի հետ, Պոլսոյ առաջին նկարչական սալոններէն մին՝* 1881*ի* ցուցահանդէսին գըլխաւոր ցուցադրողը եղաւ: *Հալիլ Էտհէմ կ'ըսէ թէ այս արուեստագէտը նշանաւոր է նաեւ* քիւֆի գծերու *Թուրքիոյ մէջ տարածման*... Հայ Գեղարուեստական Միութիւնը *ձեռք անցուցած էր Կէօչէ-Օղլուի գործերէն* ծաղիկի երկու իւղանկար *ուսումնասիրութիւններ եւ* մատիտով *աշխատուած երկու* դիմանկարներ, *արուեստագէտին* քրոջ եւ մօր դիմանկարները: *Այս վերջին դէմքը*, պատկերագրական մասնաւոր շահեկանութիւն մը կ'ընծայէ, *որովհետեւ ան կը ներկայացնէ* բարեկեցիկ քաղքենի հայ տիկինը» (*Արմենակ Սագըզեան*, Անահիտ, *Փարիզ* 1933 *Թ*. 1–2, *էջ*35–65):

*Արմենակ Սագըզ տուած է նաեւ Գրիգորի մօր եւ քրոջ՝* Օր. Նեկտարի — *Նկար-*

*ները* (Անահիտ, *անդ*, *թ*. 1–2, *էջ* 35 (*մայրը*) *եւ թ*. 3–4, *էջ* 35 (*քոյրը*), *ինչպէս նաեւ նոյն ինքն նկարիչ* Գրիգոր Կէօչէյեանի *լուսանկարը* — (Անահիտ, *անդ*՝ *թ*. 3–4, էջ 34), *որմէ հանելով կու տանք հոս իր* պատկերը:

*Գրիգոր Կէօչէյեանի գործերը Վենետիկի Մխիթարեաններուն նուիրած է* Հայ Գեղարուեստական Միութիւնը (Անահիտ, *անդ*, *թ*. 3–4, *էջ* 33 *եւ* 1937 *թ*. 3–4, *էջ* 41): *Այս Միութիւնը հիմնուած է* 1919*ի սկիզբը եւ երկար տեւած չէ* (*Տե՛ս իր մասին՝ Պատմութիւն Հայ Մշակութային Ընկերութիւններու*, *Ա*. *Վիեննա* 1957, *էջ* 727–8 *եւ* Անահիտ, *Փարիզ* 1937 *թ*. 3–4, *էջ* 40):

*Գրիգոր Կէօչէյեան մնացած է ամուրի եւ մեռած Պարիս* 1883*ի ատենները*: *դ*) *Յովհաննէս*, *ծնած* 1848*ին*՝ 1872 *Սեպտ*. 26*ին կը վախճանի*: Մասիս (1872 *Սեպտ*. 28) *կը գրէ*. «*Կէօչէյեան Վսեմ. Յովսէփ էֆ.ի որդի Յովհաննէս էֆ.ն, որ իւր* ազնիւ բնաւորութեամբ եւ ընտիր ձիրքերով *իւր ամէն ծանօթայ սէրն ու համակրութիւնը գրաւած էր*, անբուժելի հիւանդութեամբ *մ'երեքշաբթի օրն իւր ծաղիկ կեանքը կնքեց ի հասակի* 24 *ամեայ եւ երէկ յուղարկաւորութիւնը կատարեցաւ մեծահանդէս շքով*»:

Ս. Յովհ. Ոսկեբերան *եկեղեցւոյ մէջ մարմարիոն քարի վրայ քանդակել տուեր է մայրական սիրոյ*.

Մայրն գորովալիր Լուցիա
Իւր փաղամեռիկ որդւոյն
Յովհաննու Կէօչէյեան
Զայս մահարձան առ յիշատակէ
Կանգնէ աղէկէզ գթոյն
1848–1872

(*Հ. Յ. Քոսեան, անդ՝ էջ* 248)։

*դ*) Նեկտարի *մասին չենք գտած ծանօթութիւն մը։ Հաւանօրէն մնացած է կոյս։ Իր* նկարը *նկարած է եղբայրը՝ Գրիգոր եւ հրատարակուած է* Անահիտի (1933 *թ.* 3–4, *էջ* 34) *մէջ։ ե*) Սուրբիկ *ամուսնացած է* Alphonse Crèspin (*Ֆրանս.*)*ի հետ եւ ունեցած* 5 *զաւակ.* 1. Aimé *ամուսնացած է* Alber Glavani (*Ֆրանս.*)*ի հետ*, 2. Lucie *ամուսնացած է* Արամ Պէյ Կէօչէյեանի *հետ*, 3. Marie *կրօնաւորած է* (Sœur Marie St. Jean, *Լուրդի կարգ*), 4. Marguerite *ամուսնացած է* Giuseppe Oliva*ի* (*իտալ.*) *հետ.* 5. André *ամուսնացած եւ ունեցած է երկու աղջիկ։ Ասոնք ամէնքն ալ մեռած են։*

2. Մարիցա. — *Անտոնի մեծ աղջիկն է, ծնած* 1810 *եւ մնացած կոյս, մեռած է* 1879 *Ապրիլ* 19*ին* 69 *տարեկան* (Լրագիր, Կ. Պ. 1879 *թ.* 950)։ *Իր բարերարութեան ապացոյցները պահուած են հետեւեալներուն մէջ.* 22 թօփ Ամերիքա կը նուիրեն երկու քոյրեր — Մարիցա եւ Թագուհի Կէօչէյեաններ Ս. Յակոբի Աղքատանոցին (*Հ. Ս. Սրապեան*,

անդ, էջ 118)։ — Կարնոյ Հինձք Գիւղին մէջ եկեղեցի մը կը շինուի Սէլվեան եպիսկոպոսի օրով, 1862ին։ Եկեղեցւոյ խորանի Աստուածածնայ պատկերին տակը գրուած է. «Յիշատակ աստուածասէր եւ ազնուազարմ Մարիամայ դստեր Կէօչէյեան Անտոնի Կ. Պոլսեցւոյ 1862» (Հ. Յակոբ Ծ. Վ. Քոսեան, Բարձր Հայք. Բ. Վիեննա 1931 էջ 102)։

3. Պետրոս (Բեդրակ) — Ծնած է 1811ին եւ ամուսնացած Էֆիմի (Եւփիմէ) Մանասեանի (ծն. 1818 Հոկտ. 30 մեռ. 1888 Յուլ. 20) հետ եւ ունեցած 4 զաւակ. ա) Նասիպ Յարութիւն (ծն. 1847 Ապր. 6 եւ մեռ. 1882 Սեպտ. 3), որ իր սկզբնական կրթութիւնը Պոլսոյ մեր Գիշերօթիկ վարժարանին մէջ ստացած է։ 1857ին Բերայի մէջ բացուած այդ վարժարանի առաջին 9 աշակերտներէն երրորդն է — Նասիպ Քէօչէյեան, որդի հանգուցեալ Բեթրաք Քէօչէյեանի (Դիւ. 1857 Դեկտ. 16)։ — Նասիպի յետագայ կեանքի մասին տեղեկութիւն չունինք։ Մեռած է 1882ին կանխահաս մահով։ բ) Տիրան Մկրտիչ (ծն. 1850 Փետր. 3. մեռ. 1874 Յունուար 3) 15 տարեկանին — 1865 Յունիս 20ին — Մայր-վանքս այցելած է Պօղոս Կէօչէյեանի եւ տիկնոջ՝ հետ՝ երթալու համար Ռափայելեան վարժարան (Վենետիկ)։ 1874ին ճամբորդութեան մը միջոցին՝ վաղահաս մահուամբ կը վախճանի։ Կէօչէյեանց տաներէ՞ց մը թէ բարեկամ մը, որ «Ս. Վ.»

*կը ստորագրէ՝ կը սգայ 12 տուն ոտանաւոր բանաստեղծութեան մը մէջ Տիրանի* օտար ծովու վրայ հասած մահը․

*«․․․Յօտա՛ր օտար ծովափին ուրեք*
*Յորրան գրկաց մօրդ աղէկէզ*
*Մինչդեռ ի քուն կայիր քնքուշ*
*Մահն անողորմ հնձեց զքեզ։*

*Ըզքեզ, զոր սիրտս կ՚երազէր*
Թշուառ ազգիս յոյս նորաշան
Եւ մարդկութեան ազնիւ բողբոջ
Եւ վեհ զարմիդ ընշոյլ անմահ․․․»

(Մասիս, 1847 *Թ․* 1503)։ *գ)* Վերոն *եւ դ)* Արուս։ *Այս չորս զաւակներէն ոչ մէկը ամուսնացած է*։ Վերոնիկա *անդամ է Հայկաթ․* «Վարդուհեան Ընկերութեան» 1873*ին* (Մէնմ․․ Հավատիս, 1879 *Թ․* 1146) *եւ* «Աղ–քատասէր Տիկնանց Ընկերութեան» 1881*ին*։

*Պետրոս երկար կեանք չէ ունեցած։ Անծանօթ է մեզի իր հանրային կեանքն ու գործունէութիւնը։ Իր բնակարանը* Օրթա–գիւղ *էր, բայց* Բերայի *մէջ ալ տուն ունէր։ Կը մեռնի* 1852*ին։ Շիշլիի գերեզմանատան մէջ Պետրոս Կէօչէյեան իր յատուկ ընտանեկան բաժինը ունի։ Հոն մատուռի դրան վրայ գրուած է․*

Սանդուխ եմ Յակոբեան յերկրէս
վերնոյն օթեւան

Երկնաչու Հոգւոց Տոհմին
Կէօշէյեան

*Իսկ ներսը քարերուն վրայ գրուած է.*

Տիրան
Մկրտիչ Կէօշէյեան
որդի Թեդրակայ
ԾՆ. 1850. Փետրվ. 3
Վխն. 1874. Յունվ. 30

*

Թեդրիկ
Պետրոս Կէօշէյեանց
որդի Անտոնի
1811—1852

*

Էփիմի
Եւփիմէ Կէօշէյեան
Ծնեալ Մանաս
Կողակից Պետրոսի
ԾՆ. 1818. Հոկտ. 30
Վխն. 1883 Յուլ. 20

*

Նասիպ
Յարութիւն Կէօշէյեան
որդի Թեդրակայ
ԾՆ. 1847. Ապրիլ 6
Վխն. 1882 Սեպտ. 3

(Հ. Ց. *Թօսեան*, *անդ* ,*էջ* 72–3)։

4. Պօղոս.— Ծնած է 1819ին եւ ունեցած ազգային գործունէութիւն: 1864–72ի Ս. Յակոբի Հիւանդանոցի Հոգաբարձութեան 12 անդամներէն մին է (Հ. Ս. Սրապեան, անդ., էջ 113): Հ. Սրապեան կը գրէ. «Կարի արդիւնաւոր է այս Հոգաբարձութեան պաշտօնավարութիւնը, վասն զի ոչ միայն իրեն նախորդէն գոյացած պարտքը ազգ. հանգանակութեամբ մէկ տարուան մէջ մասամբ կը հատուցանէ, այլ եւ մեծ զարկ կու տայ Ս. Յակոբայ ներքին բարեկարգութեան եւ անոր կալուածոց յաւելման» (Անդ., էջ 113—4): Ինքը, Պօղոս Կէօշէ Ս. Յակոբի համար եղած հանգանակութեան կը մասնակցի 2000 դուրուշով (Անդ., էջ 118):

Պօղոս ամուսնացած է Ճանիկ Աղա Պէյլիկճեանի աղջկան՝ Թագուհիի (ծն. 1838 մեռ. 1891 Դեկտ. 7) հետ: Տիկ. Թագուհի իր էրկան բարերարութեանց նմանելով՝ մասնակցած է նախ Հայ Կաթողիկէ «Աղքատասիրաց Եղբայրութեան» Ընկերութեան՝ երկու բաժին գրուելով, ինչպէս կը տեսնուի 1864ին տպուած Եղբայրութեան Տարեկան հաշուետուութենէն: Եղբայրութիւնը ունէր 9 կէտերէ կազմուած կանոնագիր մը եւ իր նպատակն էր աղքատ տղոց արհեստ սորվեցնել (Տե՛ս նաեւ Պատմ. Հայ Մշակութային Ընկերութիւններու. Հատոր Ա. Վիեննա 1957, էջ 83–84): Տիկ. Թագուհի յետոյ շարունակած է իր բարերարական

գործունէութիւնը 1875ին Հիմնուած Հայ Կաթողիկէ «Աղքատասէր Տիկնանց Ընկերութեան» շրջանակին մէջ, ուր ստանձնած է նաեւ վարչական պաշտօն եւ վարած Ընկերութեան Գանձապահութեան պատասխանատու գործը (Տե՛ս «Ընկերութիւն Աղքատասէր Տիկնանց»․ Հաշուեկշիռ 1875 Մարտ — 1881 Փետրուար․ Կ․ Պ․ 1881, ուր աչքի կը զարնէ Կէօչէյեանց անդամակցութիւնը եւ նուիրատուութիւնը Ընկերութեան՝ անուններու ստ չարանով․ Աստինէ Կէօչէյեան, Եւփիմէ Կէօչէյեան, Սօֆի Կէօչէյեան, Վերոնիկ Կէօչէյեան, Տիրուհի Կէօչէյեան)։

Պօղոս եւ Թագուհի ունեցած են երկու աղջիկ․ ա) Մադըլէն եւ բ) Տիրուհի։ Մադըլէն ամուսնացած է, ըստ Տիկ․ Մարիամ Նազլըի՝ Յակոբ Հիւրմիւզեանի հետ եւ զաւակ չեն ունեցած։ Սակայն իր հօր՝ Պօղոսի ընտանեկան շիրմագրին մէջ գրուած է․

Պօղոս Կէօչէյեան
Ընտանիք
Մադըլէն
ԱԼԻՔՍԱՆԵԱՆ
Ծնեալ Կէօչէյեան
վախճանեալ 1924

(Հ․ Յ․ Քօսեան, էջ 67)։

Սակէ կը տեսնուի թէ Մադըլէն ամուսնացած է Ալիքսանեանի մը հետ, հաւանօրէն Հայ Կաթողիկէ Ալիքսանեան Գերդաստանի

վերաբերող անձի մը: — Տիրուհիի մասին կը գրէ Տիկին Մարիամ Պաղուպէն. Տիրուհի նախ ամուսնացած է Henri Calos-ի, յետոյ Մկրտիչ Թոքաթեանի հետ եւ ունեցած է աղջիկ մը՝ Mercédès եւ մանչ մը՝ Ferit:

— Տիրուհիի մասին հանդիպած ենք նաեւ հետեւեալ գրութեան մեր գիտնական նամակներուն մէջ. «Յաւուրս յայսոսիկ վախճանեցաւ Պօղոս էֆ. Քէօչէյեան, զորոյ զկրտսեր դուստրն գողացեալ էր ի վերջին աւուրս պատանի մի — Անդրանիկ Հիւմրիւզեան — ըստ փափաքանաց աղջկան եւ ի գիշերական փախստեան խուրեանց զաղտագողի պսակեալ փութանակի ի յոյն երիցուէ...» (Դիւ. 1880 Փետր. 27):

Պօղոս Կէօչէյեան վախճանած է 1880 Փետրուարին, իսկ Տիկ. Թաղուհի՝ 1891 Դեկտ. 7ին (Մէնմ. Ալսպար, 1891 Թ. 2252):

Հետաքրքրական պարագայ մըն է նաեւ այս որ Պօղոս Կէօչէի ընտանեկան դամբարանի անուններուն մէջ Տիրուհիի չի պտնուիր. ո՞ւր թաղուած է Տիրուհի — չենք գիտեր: Ահա Պօղոսի ընտանեկան մահարձանը.

Պօղոս Կէօչէյեան
Ընտանիք
Մատրլէն
Ալիքսանեան
Ծնեալ Կէօչէյեան
Վախճանեալ 1924
53 տարեկան

Թագուհի Կէօչէյեան
վախճանեալ 1891

*

Պօղոս
Կէօչէյեան
վախճանեալ 1880
62 տարեկան

(*Հ. Ց. Քօսեան, Գերեզմանատուն Կաթ. Հայոց, անդ՝ էջ* 67):

5. Միքայէլ.— *Ծնած է* 1826*ին՝ ամուսնացած* Կատարինէ Անէմեանի *հետ եւ ունեցած աղջիկ մը* Լուցիքա, *որ ամուսնանալով* Թովմաս Կէօչէյեանի *հետ՝ ունեցած է երկու զաւակ.* Թագուհի *եւ* Թովմաս: *Ասոնց մասին ուրիշ ծանօթութիւն չունինք: Այս* Թովմաս Կէօչէյեանը *Տիկ. Մարիամ Նալը* «Կէօչէ Օղլու» *կ՚անուանէ եւ որեւէ բացատրութիւն չի տար: Մեզ կը թուի թէ սերունդ է Կէօչէյեան Գերդաստանի* Երկրորդ Տոհմանիւղին, *որուն վրայ պիտի խօսինք յետոյ:*

6. Իսկուհի.— *Չի յիշուիր Պատրիարքարանի ցանկին մէջ: Մարիամ Նալը կը գրէ իր մասին.* Iskuhi Doudou célibataire: — 1864*ին «Ազքատասիրաց Եղբայրութեան»* անդամներու *ցանկին մէջ կը կարդանք. Կէօչէյեան Երանիկ Օրիորդ, Կէօչէյեան Թագուհի Տիկին,* Կէօչէյեան Իսկուհի Օրիորդ, *Կէօչէյեան Խաչատուր Աղա, Կէօչէյեան Սօֆի Օրիորդ»: — Մ. Ցակոբի* Աղքատանոցին *եղած նուիրատուութեան մը ցան–*

կին մէջ կը կարդանք. «66 եիւզ բէշկիրի Կէօչէյեան Իսկուհիի Տուտուտանի» (Հ. Ս. Սրապեան, անդ, էջ 118):

1852 Մարտ 10ին Պոլսէն Վիեննա նամակ մը գրելով՝ Եղ. Նիկողայոս Պալեանն կ'ապսպրէ երեք աղօթիրք սեւ եւ կարմիր կաշիով կազմուած եւ ոսկեզօծ. «Աղաչեմ բարուք ինչ լիցի, կը գրէ նա, զի վերաբերի դստերց Քէօչէքեան Անտոն Աղայի» (Դիւ. 1852 Մարտ 10): Այդ ատեն կատարուած էր արդէն Ալլահվէրտեան Աբրահամ Ամիրայի անդրանկին՝ Գրիգորի պսակը Կէօչէյեան Թերէզօնի հետ:

7. Երանիկ.— Ծնած 1827ին՝ մնացած է կոյս: Կը մեռնի 1903 Ապր. 19ին: Այս ատենները Կէօչէյեանց մատրանապետն էր Բառնաբաս Ծ. Վ. Սամանճեան: Օր. Երանուհի կենդանութեանը կտակ մը ըրած՝ յանձնած էր Սամանճեան Վ.ին: Վարդապետը Օրիորդի մահէն վերջ կը փութայ յանձնել անոր կտակը Ամենապատիւ Հոգեւոր Տիրոջ Խմմանուէլեան Կաթողիկոս-Պատրիարքին, որ ժառանգորդները գումարելով՝ ընթեռնուլ կու տայ անոնց առջեւ: Այս ընթերցումէն կ'իմացուի որ հանգուցեալը Ս. Յակոբ Ազգ. Անկելանոցին 2000 օսմ. ոսկւոյ արժողութեամբ գոհարեղէն նուիրեր է Հէօնէրբը շէրիով վաւերացեալ 17 Մուհարրեմ 1317 (=1901), պայմանաւ որ յիշեալ գումարին կէսով Ս. Յակոբայ Մատուռը նոր շինուի

եւ անոր մէջ թաղուի իր մարմինը, *իսկ միւս կէսով ալ* կալուած մը կառուցուի ի նպաստ այն հաստատութեան: *Կ'իմացուի զարմեալ որ կտակակատար կարգեր է* Բէճմէզ Կոմիտաս էֆ. *եւ* Անտոն Պէկ Կէօչէյեան, *իր եղբօրորդին (Յակոբ Կէօչէի երեցը): Կտակի գործադրութիւնը այլեւայլ դժուարութիւններու կը բախի ու կ'ուշանայ տարի մը: Հանգուցեալին մարմինը, որ Ս. Յակոբի մէջ պահուած էր՝ շաբաթէ մը Շիշլիի Ազգ. Գերեզմանատունը կը փոխադրուի, ուր Մատրան տեղը նոր շինութիւններու յատկացուած էր եւ ուրիշ մը շինելն ալ կայսերական հրամանի կը կարօտէր, որ շատ դժուարաւ ձեռք կը բերուէր Սուլթան Համիտ Բ.ի օրով (Հ. Ս. Արապեան, անդ, էջ* 298–9):

*Օր. Երանիկին կտակած գոհարեղէններու գնահատումը մասնագէտներու կողմէ տեղի ունենալով՝ կ'իմացուի որ անոնց արժէքն է* 1300 *օսմ. ոսկի, որով* Միւթէվէլլի *Կէօչէյեան Անտոն Պէյի եւ Գերդաստանի, ինչպէս նաեւ Ս. Յակոբի Հոգաբարձութեան միջեւ համաձայնութիւն մը գոյանալով կ'որոշուի.*

*Ա. Հանգուցեալ Օր. Երանիկին մարմինը թաղել* Շիշլիի գերեզմանատունը եւ վրան կառուցանել 300 ոսկւոյ արժողութեամբ շիրիմ մը.

Բ. *Մնացած գոհարեղէններու արժէքին դիմաց Ս. Յակոբի կալուածներէն թիւ* 2

տան վրայ հանգուցեալին արձանագրութիւնը դնել եւ նոյնը նշանակել Անկելանոցի տոմարին մէջ։

Գ. Գոհարեղէնները Ս. Յակոբի Հոգաբարձութեան յանձնել.

Դ. Կատուցեալ չիրմին նորոգութիւնները Անկելանոցէն կատարել.

Ե. Հանգուցեալին մահուան օրը (19 Ապրիլ) Ս. Յակոբայ մատրան մէջ տարին ձայնաւոր պատարագ մը մատուցուի եւ իր գերեզմանին վրայ թիւ պատարագ մը չիրմին նուիրման օրը (անդ, էջ 304–5)։

1904ին Կէօչէյեանց մատրանապետն է Յովհաննէս Ծ. վ. Թումայեան։ Օր. Երանիկին գոհարեղէնները դրամատուն մը կը գետեղուի։ Անոնց գին տուող կայ 1300–1350 ոսկի։ Հոգաբարձութիւնը իր խոստումին համեմատ չիրմին չինութեան կը ձեռնարկէ եւ կ՚աւարտէ։ Թիւ 2 տան վրայ կը գետեղէ ձուածեւ կճեայ տախտակ մը՝ սա վերտառութեամբ.

Յիշատակ
Երանուհի Կէօչէյեանի
Հրիտակ 19 Ապրիլ 1903
(Հ. Ս. Արապեան, անդ, էջ 106–7)։

Ս. Յակոբայ Ազգ. Հիւանդանոցի մշտընջենաւոր պատարագներու ցուցակին մէջ նշանակուած է. «1905 Ապրիլ 19. Կէօչէյեան Երանուհւոյ տարին ձայնաւոր պատարագ

եւ պաշտօն: «1905 *Մայիս* 14. եւ մէկ թիւ պատարագ նոյնպէս Կէօչէյեան Երանուհւոյ համար իր շիրմին վրայ» (*Անդ*, *էջ*, 454):

*Օր. Երանուհիի մահուան առթիւ կը գրէ* Մէնմ. Ալսպար *թէ հանգուցեալը բարեպաշտ եւ բարեգործ անձ մ'ըլլալուն՝ միշտ Հայ Կաթ. Հիւանդանոցին նուիրատուութիւն ըրած, աղքատները հոգացած է. զինքը ճանչցողները մահը լսելով՝ մեծ ցաւ զգացին: Թաղման յուղարկաւորութիւնը կը կատարուի Ս. Յովհ. Ոսկեբերան եկեղեցւոյ մէջ՝ ամբողջովին սեւով եւ զարդերով ծածկուած եւ ամէն կողմ մոմավառ, մէջտեղը «քաւարան» մը ծաղկազարդ: Թաղման կարգը կը կատարէ* Հոգեւոր Տէրը՝ Իմմանուէլեան Կաթողիկոս *իր չուրջն ունենալով* Թերզեան, Հաճեան, Խորաշէլեան եւ Սիսլեան եպիսկոպոսները: *Եկեղեցին բերնէ բերան լեցուն է. Նաում Փաշայէն սկսեալ մեծամեծներ պատուած են թէ՛ հանգուցեալը եւ թէ իր ներկայացուցած Գերդաստանը* (Մենմ. Ալսպար, 1905 *Թ*. 4035):

*Շիշլիի գերեզմանատան մէջ Օր. Երանուհի ունի հետեւեալ գրութիւնը.*

Դամբարան Կէօչէյեան Երանուհւոյ
*Ս. Յակոբայ Անկելանոցին*
*Հոգաբարձութիւնը՝ ըստ*
*Կարգադրութեան Լուսահոգի*
*Օր. Երանիկ Կէօչէյեանի կտակին*
*Յանձնաժողովյն կանգնեց այս*

*Դամբանին եւ կը ստանձնէ անոր*
*Նորոգութիւն ընել եւ հոն*
*Թիւ պատարագ մը մատուցանել տալ*
*Ամէն տարի Մայիս 14ին*
*Ի հանգիստ հոգւոյ*
*Նազելաշուք հանգուցելոյն* 1904
(*Հ. Ց. Քոսեան, անդ, էջ* 137):

8. Թագուհի. — *Չի յիշուիր Պատրիարքարանի ցանկին մէջ: Ամուսնացած է, ըստ Մարիամ Նազլըի,* Ազնաւուրեանի *մը հետ: Ի դուր անցան մեր փնտռտուքները ճշդումի մը համար: Իր անունը չկայ այն ցանկերուն մէջ ուր կը յիշուին Կէօչէյեան Օրիորդներ ու Տիկիններ:*

9. Սոֆի.— *Ծնած է ըստ Պատրիարքարանի ցանկին* 1834*ին, ինչ որ անկարելի է, քանի որ իր հայրը* 1832*ին կը մեռնի: Ուրիշ կողմէ լուսաբանութիւն չգտանք: Սոֆի մնացած է կոյս եւ մեռած* 1914 *Ապրիլի* սկիզբը (Ժամանակ, 1914 *Թ.* 1756): *Իր անունը կը յիշուի «Աղքատասիրաց Եղբայրութեան» անդամներու ցանկին մէջ,* 1864*ին եւ «Աղքատասէր Տիկնանց Ընկերութեան» մէջ* 1881*ին:*

## Ց· ԿԷՕՉԷՅԵԱՆՑ ՄԵԾԱԳՈՅՆ ԴԷՄՔԸ — ՅԱԿՈԲ ԿԷՕՉԷՅԵԱՆ

Անտոն Կէօչէ Օղլուի 10*րդ զաւակը*՝ Յակոբ *ամենանշանաւոր անձն է Կէօչէյեան Գերդաստանի մէջ թէ՛ իբրեւ* պետական բարձրաստիճան անձնաւորութիւն *եւ թէ իբրեւ* ազգային բարերար: *Այս գլուխներու վրայ խօսելէ առաջ ջանանք տալ նախ խտացած պատկերը իր կեանքին*:

### Ա· ԿԵՆՍԱԳՐԱԿԱՆ ԳԾԵՐ

Ծնունդ եւ կրթութիւն·— *Յակոբ Կէօչէյեան ծնած է, ըստ Պատրիարքարանի*՝ 1822*ին*: *Իր աղջիկը Տիկ· Պերճուհի կը համարի ծնած* 1818–20*ին*: *Ըստ Տիկ· Մարիամ Նազըրի*՝ *իր մինս աղջկան*՝ 1820*ին*: *Իր մահուան առթիւ*, 1893 *Յունուար* 9, Մէնմ· Ախպար (1893 *Թ*· 2577) *եւ* Հայրենիք (1893 *Թ*· 356) *կ'ըսեն որ* 74 *տարեկան էր*, *հետեւաբար* 1892 — 74 = 1818: *Իսկ իր* շիրմաքարին *մէջ գրուած է* 1826*ին ծնած*:

*Մենք ճիշդ կը համարինք* 1818 *թուականը*, *նկատի առնելով մանաւորապէս այն որ թէ՛* Մէնմ· Ախպար, *թէ՛* Հայրենիք, *թէ՛* Փունջ (1893 *Թ*· 2341) *եւ թէ մեր Դիւանը* (1893 *Յունուար* 26) 74 *տարեկան էր կ'ըսեն*, 1893 *Յունուար* 9*ին մեռնող Յակոբ Կէօչէյեան*, *այսինքն*՝ 1818*ին* ծնած:

*Յակոբ ուսման մեծ սէր ունենալով՝ հայրը ամէն դիւրութիւն տուած է ուսման ծարաւը յագեցնելու համար*: *Բնականէն ու–*

*չիմ ու մտաւոր բարձր կարողութեամբ օժտուած մանուկը շատ կը յառաջանայ ուսմանց եւ գիտութեանց մէջ: Կը զարգանայ մասնաւորապէս* առեւտրական եւ սեղանաւորական *գիտութեանց ճիւղերու մէջ, որոնք ապագային պիտի կազմէին իր գործունէութեան ասպարէզը*: Լեզուներու *մէջէն գլխաւորաբար* թրքերէնին *մեծ ուշադրութիւն դարձուցած կ'երեւայ*:

Ընտանիքի մէջ.— 1832*ին վախճանած էր իր հայրը ու եղբայրները ցրուած Պոլսոյ զանազան թաղերու մէջ. Յովսէփ՝* Գատրգիւղ, *Պօղոս ու Միքայէլ՝* Բերա, *Պետրոս՝* Օրթագիւղ: *Յակոբ կը նախընտրէ մնալ հայրենի տանը մէջ՝* Թոփգափու: *Իր քոյրերէն չորսը* — Մարիցա, Երանիկ, Իսկուհի եւ Սոփի *ամուսնութիւնը նախընտրելով՝ կը* մնան իր քով, հայրենի տան մէջ: *Ու Յակոբ երախտապարտ հատակէն պարտականութիւն կ'ունենայ* տան ու ընտանեկան ամբողջ հոգը բառնալու: *Մասնաւոր սէր ունենալով իր եղբօրորդիներուն՝ հոգ կը տանի անոնց ուսման ու դաստիարակութեան համար: Անոնցմէ երեքը* — Գրիգոր, Յովհաննէս *եւ* Նասիպ — *կը զետեղէ Բանկալթիի Նորաբաց* Վիեննական Մխիթարեանց Գիշերօթիկ վարժարանին մէջ, *որոնցմէ առաջին երկուքը յետոյ կը ղրկէ Պարիս՝ շարունակելու համար իրենց ուսումը* Սամուէլ Մուրատեան *վարժարանին մէջ* (*Դիւ.* 1865 *Յունիս* 2):

Ամառանոցներ եւ կալուածներ.— Յակոբ գնած էր ընդարձակ գետին մը Զամլըճայի մէջ, ուր շինել կու տայ հրաշալի ամառանոց մը պարտէզներով ու այգիներով, որոնց մէջ կ'աշխատէին 25 պարտիզպաններ, ունենալով իրենց վերակացու մոնտենեգրոցի մը: Այդ ամառանոցի ճարտարապետական շէնքը հրաշալիք մ'էր ինքնին ու կը բովանդակէր ամէն բան, ինչ որ մարդկային կեանքի պիտոյքներու գոհացումին ու հանգստաւէտութեան համար անհրաժեշտ կը նկատուէր ու կեանքը հաճելի կը դարձնէր: Հոն կային բաղնիքներ ու գրօսատեղիներ:

Բացի ատկէ՝ Ալէմ-Տաղի մէջ, Բոսփորի բարձունքին ստացած էր Յակոբ ժառանգութիւն անծայրածիր դաշտեր ու անտառներ՝ յատուկ բնակարանով: Այս գետինը ծովէն 250–300 մեթր բարձր էր: Այնքան հսկայ տարածութիւն ունէր այս ստացուածքը որ չէին գիտեր թէ ուսկի՞ց կը սկսին եւ մինչեւ ո՞ւր կը վերջանան իր սահմանները: «Von-der Goltzի շինած քարտէսի մը (Topographische Landkarte) միջոցաւ միայն կրցած են ստուգել անոր սահմանները», կը գրէ Տիկ. Մարիամ Նազլը Կորինալդի Կոմսուհին, Յակոբ Կէօչէյեանի դուստրը (Պադուա):

Հիւանդութիւնը.— 1856ին կը հիւանդանայ Յակոբ Կէօչէյեան, հաւանաբար երիկամունքի ցաւերով: Բժիշկները կը յանձնարարեն Karlsbadի ջերմուկները: Գերմանե–

րէն լեզուին անծանօթ ըլլալով՝ Յակոբ Վիեննա Մայր–վանք կը դրէ ու առաջնորդ ընկեր մը կը խնդրէ՝ բոլոր ծախքերը վրան առնելով: Գեր. Յակոբոս Արքեպ. Պօղաճեան Աբբահայրը Հ. Աթանասը կը տրամադրէ ու զինքը Տրիեստ կը ղրկէ՝ դիմաւորելու համար հիւանդը: Յակոբ Կէօչէ Պոլսէն Տրիեստ կը հասնի 1856 Յունիս 14ին: Հ. Աթանաս առնելով զայն կը բերէ Վիեննա ու ասկէ Կարլսբադ, ուր կը մնան մինչեւ բաղնիքներու վերջանալը (Դիւ. 1856 Յունիս 15, 24): Կէօչէյեան Վիեննայի բժիշկներու խորհրդով երեք շաբաթ Կարլսբադ եւ երեք շաբաթ ալ Franzensbadի ջերմուկները մնալէ վերջ՝ մեծապէս օգտուելով ու կազդուրուելով՝ կը վերադառնայ Հ. Աթանասի հետ Վիեննա: Մայր–վանքի մէջ վարդապետները հիւրամեծար ընդունելութիւն կ'ընեն. կը հրաւիրեն զինք նաեւ մեր ամառանոցը՝ Կլոստերնայբուրգ, ուր բախտ չեն ունենար սակայն գեղեցիկ օդ մը վայելելու եւ հաճելի ժամեր անցնելու, այլ ամէն օր հով ու անձրեւ անդադրում կը շարունակուին (Դիւ. 1856 Սեպտ. 16): 1856 Սեպտ. 21ին Վիեննայէն վերադառնալով՝ Յակոբ Պոլիս կը հասնի Հոկտեմբերի սկիզբը: Պոլսոյ մեր վանատան այցելութիւն մը տալով՝ կրկին ու կրկին շնորհակալութիւն կը յայտնէ թէ՛ Գեր. Աբբահօր եւ թէ Միաբանութեան՝ իր ճամբորդութեան առթիւ ընձեռուած ամէն դիւրու–

թեան ու օգնութեան համար (Դիւ. 1856 Հոկտ. 13):

Յակոբ Կէօշէյեան իր այս հիւանդութեան առթիւ ունեցած է բաւական ճոխ թղթակցութիւն մը մեր Միաբանութեան հետ: Իր նամակները գրած է միշտ գեղեցիկ ու բարձր թրքերէնով՛ մը: Այդ նամակներէն 4–5 հատ կը պահուի մեր Դիւանին մէջ: — Այդ ատեն իր բնակութիւնը Չէնկէլ–քէօյ էր:

Ամուսնութիւն. — Ընտանեկան ու արտաքին դրդումներով կլանուած՝ Յակոբ Կէօշէյեանի կեանքին 40 տարիները սահած էին աննշմար ու տակաւին ժամանակ չէր ունեցած ամուսնութեան վրայ խորհելու: Ազգականներու եւ բարեկամներու յորդորներուն տեղի տալով՝ Յակոբ կը սկսի մտածել ընտանեկան բոյն մը կազմելու մասին: «Բայց որովհետեւ իրեն ծանօթ շրջանակներուն մէջ զինք չահագրգռող կեանքի ընկեր մը չի գտներ՝ աղօթքի միջոցաւ կը դիմէ Աստուծոյ եւ իր խոստովանահօր խորհուրդով իննօրեայ ջերմեռանդութիւն մը կը սկսի՝ լուսաւորութիւն ստանալու համար: Իննօրեայի միջոցին իր բարեկամներէն մին կը թելադրէ Notre-Dameի հաստատութեան գիշերօթիկ աղջկանց վարժարանին այցելութիւն մը տալ միասին, ուր բարեկամը ծանօթ շատ յարմար օրիորդ մը կը ճանչնար, որուն անունն էր Եւդոկիա Լորանզօ (իտալացի): Այցելութիւնը կու տան: Վարժարանի

Տնօրէնուհին ներքին կանոններու համեմատ այդ ծանօթ օրիորդին կ'ընկերացնէ նաեւ երկրորդ օրիորդ մը, որ կը կոչուէր Էլիզա Քուրքեան, Անկիւրիոյ ազնուական ընտանիքի մը աղջիկը եւ այրի մօր մը մէկ հատիկ զաւակը»: Ասոնք գրող Կոմսուհի Տիկ. Մարիամ Նազլը կ'աւելցնէ որ այս ընկերացող օրիորդն ալ բացառիկ գեղեցկութեամբ օժտուած, բայց անկէ աւելի ըլլալով՝ համեստութեամբ ալ զարդարուած էր: Յակոբ Կէօչէյեան՝ առաջինին տեղ այս երկրորդը կ'ընտրէ, որ տակաւին 15 տարեկան էր: Անմիջապէս դպրոցէն կը հանուի եւ նշանտուքը կը կատարուի ու երկու տարի վերջն ալ պսակը կ'օրհնուի Կէօչէյեան սեպհական մատրան մէջ հայկական ծէսով: Պսակը կը կատարէ Հ. Քաջունի, որ Ս. Ղազարէն յատկապէս հրաւիրուած էր՝ բերելով իր հետ Ս. Քահանայապետին օրհնութիւնը: Հարսանիքը կատարուած է 1865ին:

Ամառանոց մը Պէպէքի մէջ.— Պսակէն վերջ Յակոբ Պոլսոյ եւրոպական թաղերէն Պէպէքի մէջ մեծ եալըի (ամառանոց) մը կը գնէ, որ 1600էն մնացած Թուրք ազնուական ընտանիքի մը ժառանգութիւնն ըլլալով՝ վերջին ժառանգորդ այրի տիկինը ուզած գինէն աւելիով կը ստանայ դրամ եւ ինքն ալ իրաւունք կ'ունենայ մէջը բնակելու մինչեւ իր մահը:

Հրդեհուած տան տեղ պալատանման

շէնք մը.— 1870ին ծանօթ Բերայի մեծ հրդեհին հրոյ ճարակ կը դառնայ նաեւ Յակոբ Կէօչէյեանի ընտանեկան տունը: Անոր տեղ իրենց հողին դիմաց Յակոբ նոր հող մը կը գնէ եւ վրան հոյակապ շէնք մը կը բարձրացնէ, որուն ճարտարապետը, Իտալիա ուսած, իրեն նմոյշ կ'ունենայ Հռոմի Palazzo Farneseն: Այս շէնքը կը գտնուէր Տողըլեօլ թիւ 191:

Կէօչէյեան Տոհմին գլուխը.— Յակոբ Կէօչէյեան այս տարիներուն — 1860-1870 — հասած էր իր բարձրութեան գագաթնակէտին. Պոլսոյ հայ թէ օտար ամենահարուստ սեղանաւորներէն մէկն էր. ունէր թուրք պետութեան մէջ աչքառու դիրք եւ պաշտօն. հայ ազգային գործերու մէջ յաճախ առաջնորդի դերը իրեն կ'իյնար: Ասոնց ամէնուն վրայ կ'աւելնար ուրիշ փառք մըն ալ. Կէօչէյեան Գերդաստանի ամենակարկառուն դէմքն էր ինք ու զայն կը ներկայացնէր որեւէ պարագայի մէջ: 1860 Ապրիլ 7ին Պոլսոյ Հայ կաթողիկէ համայնքը հիմնադրութեան հանդէսը կը կատարէ Ս. Յովհան Ոսկեբերանի եկեղեցւոյ եւ Ազգին կարկառուն անձերուն ու իշխաններուն անունները մագաղաթի մը վրայ գրուած՝ կը զետեղուի եկեղեցւոյ հիմնաքարերուն մէջ: Արդ, այդ ցանկին գլուխը գրուած է Յակոբ Քէօչէյեան (Տե՛ս Մէնմ. Հավատիս, 1860 Թ. 343): Յակոբ Կէօչէյեան՝ Ոսկեբերան եկեղեցւոյ

շինութեան համար մեծագոյն գումարը նուիրած էր ։

Հիւանդութիւն․ — 1869ին *դարձեալ կը հիւանդանայ Յակոբ Կէօչէյեան եւ առողջանալուն պէս շատ մը բանտարկեալներու պարտքերը վճարելով՝ բանտերէն կ'ազատէ ։ Այս առթիւ կը գրէ ժամանակակից թերթ մը ․* «*Մայրաքաղաքիս* երեւելի սեղանաւորներէն Կէօչէյեան Յակոբ էֆ․, *անցեալներս* իր վրայ տիրած հիւանդութենէն բժշկուելուն առթիւ *որոշեր է* բանտարկութենէ ազատել 100էն մինչեւ 1000 դուրուշի պարտականները. *կը հաշուեն թէ այսպէս* 100 *կամ* 150 *հազար դուրուշ պիտի վճարէ* (Փնջիկ, Կ․ Պ․ 1869 Թ․ 423) ։

1873ին Տիկ․ Էլիզա *կը հիւանդանայ եւ սուր ու առողջութեան առթիւ կը գրէ* Հայրենիք․ «*Ուրախութեամբ սրտի կարդացինք թէ* վսեմ․ Յակոբ էֆ․ Քէօչէյեան *իւր ազնուուհի Տիկնոջ* հիւանդութեան առթիւ 40*ի չափ* բանտարկեալ հայ եղբարց պարտքերը վճարելով զանոնք բանտէն ազատեր *եւ Ս․ Զատկի օրերուն մէջ զանոնք մխիթարեր է․․․ Արդարեւ վսեմ․ Յակոբ էֆ․ի մարդասիրութիւնը եւ աստուածեռն բարերարութիւնը, ինչպէս զինք ի մօտոյ ճանչցողները կը վկայեն, ընդհանուր Ազգին շնորհակալութեան եւ երախտագիտութեան արժանի են ։* Եւ արդէն Յակոբ էֆ․ի անցեալը անհուն բարերարութեանց պատկեր մ'է ։ *Հետեւաբար այն–*

*պիսի անձ մը անմոռանալի յիշատակաց թարժանի է»* (Հայրենիք, Կ. Պ. 1873 Թ. 144)։ Փունջ *կ'իմանայ որ Յակոբ* 100,000 *ղուրուշ ծախք ըրեր եւ 40 բանտարկեալ ազատեր է.* «*Որչափ բերկրութիւն զգացին արձակեալք եւ նոցա թշուառ պարագայք։ Անոնք ալ դացին խառնուեցան* Կէօչէյեան էֆ.ի եւ նորա մեծատոհմ Գերդաստանի յաւիտենական օրհներգուաց ստուար խմբին հետ» (Փունջ, Կ. Պ. 1873 Թ. 780)։ *Երախտագիտութենէ դրդուած՝ Հայ եկեղեցիներու մէջ աղօթքներ ըրած են Տիկ. Էլիզայի ապաքինման համար* (*անդ*)։

Ազատարարը.— «*Ղալաթիոյ վաճառականներէն հանրածանօթ* Գաբրիէլ Մինասեան 1884 *Յուլիսի երեկոյ մը ուշ ատեն Առնաւուտ գիւղի ծովեզերքէն կ'անցնէր* Պէպէք *իր տունն երթալու համար։ Քեամիլ փաշայի ապարանքին մօտ, բաց տեղ մը, երկու անծանօթներ յանկարծ իր վրայ կը նետուին եւ վայրագ կատաղութեամբ զինքը կողոպտելէ վերջ՝ կը վերցնեն ծովը կը նետեն։ Դժբախտ մարդը տասը բոպէ հոսանքին ի վար դէպի Առնաւուտ գիւղ մղուելու միջոցին՝* Կէօչէյեանց ծովեզերեայ ապարանքէն *վտանգուածին ձայնը կը լսուի եւ խեղճն* վսեմ. Յակոբ Կէօչէյեան *իր նաւավարը օգնութեան կանչելով՝ կը դիմէ ծովեզերքը։ Նոյն վայրկենին թանձր մութին մէջ բարեբախտաբար կայծակի մը լոյսին շնորհիւ կը տեսնեն վտան–*

*գուածը : Նաւավարը անմիջապէս իւր երկայն գօտին վտանգելոյն կը նետէ «Բռնէ՛ զայս» գոռալով : Գաբրիէլ կը յաջողի բռնել գօտին ու գրեթէ կիսամեռ ծովէն դուրս կը հանուի ու Յակոբ Կէօչէյեան զայն իր տունը տանելով պէտք եղած դարմանները կ'ընէ ամէն հոգածութեամբ. կը հանէ բժիշկն ալ ու հարկ եղած խնամքները տանելով Գաբրիէլ Մինասեան կ'ապաքինի բոլորովին»* (Բիւրակն, *Կ. Պ.* 1884, *էջ* 28–29) : *Թերթի խմբագիրը կ'աւելցնէ. «Մեծապէս ցնծալով Գաբրիէլ էֆ.ի այս Նախախնամական ազատութեան համար, միեւնոյն ատեն կը բաղձամք* հրապարակաւ դրուատել Կէօչէյեանի վսեմ. Յակոբ էֆ.ի մարդասիրական աշխատանքը եւ այն մասնաւոր խնամքը եւ հոգածութիւնը, զոր ցոյց տուած է այս պարագայիս մէջ» (*անդ*) :

Ազգային գործիչը. — *Յակոբ Կէօչէյեան կանուխէն դեր ունեցած է Հայ Կաթողիկէ Նորակազմ Համայնքի գործերուն մէջ: Իր պետական ու սեղանաւորական բարձր դիրքին պատճառաւ մեծ կշիռ ունեցած է իր անձը եւ ազդեցիկ իր ձայնը : Ինքն ալ խառնուած է հակահասունեան խնդիրներու մէջ, ինչպէս առհասարակ Կէօչէյեանք :* 1861*ին ընտրուած է անդամ Յանձնարարական ժողովի մը (Յ. Ասկէրեան, Պատմութիւն անդ, էջ* 379) : 1863*ին կ'ընտրուի տասը հոգիէ բաղկացած Վարչական Մարմնի անդամ*

(անդ , էջ 396) ։ 1867ին Գեր․ Հասուն Կաթողիկոս–Պատրիարք Հռոմէն Ս․ Սեղբեստրոսի Հրամանատարութեան շքանշան բերել կուտայ նաեւ Յակոբ Կէօչէյեանի, որ Ս․ Յովհ․ Ոսկեբերանի չինութեան Յանձնարարական ժողովի անդամ է (Յ․ Ասկէրեան, անդ, էջ 464) ։

Տիկ․ Պերճուհի կը գրէ որ իր հայրը, Յակոբ Կէօչէյեան «Ազգին դրամական մեծ օգնութիւն ըրած է ։ Ս․ Յակոբ հիւանդանոցին ալ օգնած է ։ Գերեզմանատան պատերը ինքը շինել տուած է ։ Իսկ Ս․ Երրորդութեան եկեղեցին Աւստրիացիներէն գնուած ժամանակ 3000 ոսկի տուած է Հասուն կաթողիկոսին» ։

1890ին սկիզբը հիւանդացած է Յակոբ Կէօչէ եւ տեւած քանի մը ամիս ։ Մարտին ապաքինած ըլլալով՝ Գեր․ Ստեփանոս Պետրոս Ժ․ Կաթ․ Պատրիարք նամակով մը կը գրէ «Առ փսեմաշուք էֆ․ Կէօչէյեան, Միութէվէլլի եկեղեցւոյ Ս․ Յովհ․ Ոսկեբերանի»՝ կարգ մը ազգային խնդիրներու կարգադրութեան համար (Տե՛ս Հ․ Ս․ Սրապեան, Ս․ Յակոբ, անդ, էջ 198–200) ։

Յակոբ Կէօչէյեանի Տիկինն ալ ունեցած է ազգային գործունէութիւն ։ Յիշենք հետեւեալը․ 1880ին սկիզբը կազմուած էր Հայաստանի Սովելոց Կենդրոնական Մասնաժողով մը, որուն ատենապետն էր Սերովբէ Կիւլպէնկեան, իսկ ատենադպիրը՝ ծանօթ հայ

*կաթողիկէ* Պողոս Թ. Տաշեան: *Կից այդ Մասնաժողովին կը կազմուի 1880 Փետրուարին* Տիկնանց Օժանդակ Մարմին *մը, որուն գլուխն անցած էր տիկին Յովհ. Ալլահվէրտի: Այդ Մարմնոյն անդամ էր նաեւ* Տիկ. Կէօչէյեան (*Տէ՛ս* Թէրճէմանը էֆքեար, 1880 *Թ.* 804):

Ճամբորդութիւն մը «առ ոտս Առաքելոց», վերջին հիւանդութիւնը եւ մահը.— *Յակոբ Կէօչէյեանի կեանքն եղած է հեւիհեւ աշխատանք մը, տքնութիւն մը եւ յոգնութիւն մը: Ամենէն խաղաղ ու երջանկաւէտ վայրկեաններն ապրած է նա իր ընտանեկան բոյնին մէջ, ուր եղած է* գաղափարական ամուսին եւ սիրազեղ հայր մը: *Որքան կ'երեւայ իր կեանքին վերջերը ճամբորդութիւն մ'ըրած է «առ ոտս Ս. Առաքելոց» եւ «Ս. Գահուն»: Զի կը գրէ Տիկ. Մարիամ Նազըր.* «Լեւոն Գ. Քահանայապետը Յակոբին արժանիքները ճանչնալով՝ իրեն մինչեւ հինգերորդ սերունդ Քահանայապետական օրհնութիւն, իր ինքնագիր լուսանկարը եւ շատ մը գեղեցիկ նուէրներ շնորհեց ամբողջ ընտանիքին». «*կրօնական խնդիրները ի վերջոյ խաղաղութեամբ լուծուելով*՝ Կէօչէյեանները միշտ հայ եւ հռոմէական եկեղեցւոյն հաւատարիմ որդիները կը մնան: *Իրենց* Գերդաստանին վերաբերեալ ինն եկեղեցական զգեստները կը *նուիրեն* Ս. Ղազարու վանքին»:

*Պոլսոյ Խասգիւղ Թաղին մէջն է* Գալֆա-յեան աղջանց Որբանոցը: *Այդ Որբանոցի մատուռի առաստաղի մէջտեղէն կախուած է ներկայիս* «հսկայ թանկարժէք ջահ մը, *որ* Պէօշէ Օղլուներու տան սենեկին ջահն է եղեր *եւ Գարակէօզեան ընտանիքի մէկ ան-դամը գնած ու նուիրած է զայն Հաստատու-թեան*» (Հայաստանի Կոչնակ, 1953 *Թ*. 19, *էջ* 446):

*Յակոբ Կէօշէեան* 1892*ի վերջերը կը հիւանդանայ անգամ մը եւս* երիկամունքի *իր հին ախտով եւ* հիւանդութեան բարդու-թեան մը հետեւանքով *կը վախճանի* 1893 *Յունուար 9ին: Ահաւասիկ իր տիկնոջ եւ մեր-ձաւորներու հրատարակած «մահազդը»*.
«Յակոբ Էֆէնտի Կէօշէեան հանգեաւ ի տէր, ի մեծ սուգ Գերդաստանին: Անմխիթար կո-ղակիցն եւ վշտահար որդիք եւ քորք եւ ազ-գականք հրաւիրեն զբարեկամս եւ զծանօթս ի տխրագին յուղարկն յետին...» (Հայրե-նիք, *Կ. Պ*. 1893 *Թ*. 355):

Հայրենիքի *խմբագրութիւնը կը գրէ*. «Կէօշէեան Յակոբ էֆ. Պոլսոյ ամէնէն հան-րածանօթ դէմքերէն մին էր: *Դրամական հրապարակին վրայ երբեմն շատ նշանաւոր տեղ մը գրաւեց*: Գրէտի Ժէնէրալ Պան-քային գլխաւոր հիմնադիրներէն եւ վարիչ-ներէն մին եղաւ եւ իր անունը անմոռաց կը մնայ Պոլսոյ Պորսային տարեգրութեանց մէջ: *Հռոմէական Հայոց գործերուն մէջ ալ երբեմն*

*մեծ դեր կատարած է 1870ի կարեւոր խնդիրներու միջոցին եւ իր անունը անբաժան կը մնայ այն ատենուան դէպքերէն . . .* իր հասարակութիւնը իրեն կը պարտի Ս. Յովհան եկեղեցիին կից դպրոցի շէնքը, *զոր 1863ին կանգնած է յիշատակ իր ծնողքին եւ որ* հիմա ուրիշ նպատակի կը ծառայէ: *Արդուինի մօտ* Արտանուշ գիւղին մէջ մատուռ մը. զոր շինել տուած է իր ծախքովը: ***Յակոբ էֆ. Պոլիս ծնած էր***, բայց իր հայրը գաղթած էր Արտանուշ գիւղէն[1]: ***Յակոբ էֆ.*** *կը մեռնի 74 տարեկան . . . Հանգուցեալին մարմինը պիտի փոխադրուի իր ապարանքէն (Բերա) Ս. Յովհ. Ոսկեբերան եկեղեցին: Հռոմէական Հայոց Պատրիարք Տ. Ազարեան, որ պիտի մեկնէր մայրաքաղաքէս, իր ուղեւորութիւնը յետաձգեր է եւ պիտի նախագահէ յուղարկաւորութեան հանդէսին: Մարմինը պիտի փոխադրուի Ֆէրիգիւղի (Շիշլի) գերեզմանատունը*, ուր Յակոբ էֆ. մասնաւոր գետին մը գնած էր ասկից առաջ *եւ Տ. Ազարեան Պատրիարքին հետ մէկտեղ հարկ եղած կարգադրութիւններն ըրած՝* դամբարան մը եւ մատուռ մը կառուցանելու համար անոր» (Հայրենիք, *անդ*):

*Յուղարկաւորութիւնը մեծահանդէս եղած է ներկայութեամբ անթիւ անհամար բազմութեան մը, որուն մէջ աչքի կը զարնէր*

---

[1] *Այս մասին ճշդումներ ըրած ենք պատմութեան սկիզբը:*

միայն պետական բարձր պաշտօնեաներու բացակայութիւնը՝ Համիտ Բ.ի անհաշտ հակառակութեան պատճառաւ, զոր պիտի տեսնենք համառօտի: Այս հանդէսի մասին գրած են Հայրենիք եւ Մէճմ. Ախպար: Կու տանք Հայրենիքի նկարագրութիւնը.

«Յուղարկաւորութեան մեծաշուք թափօրը կը կազմուէր Կէօչէյեան ապարանքին դրան առջեւ: Ապարանքը սգական կերպարանք մը առած էր: Վերը, մեծ սրահի մը մէջ, որ վերածուած էր շաբէլ առտանդի, դրուած էր դագաղը տախտի մը վրայ պսակներով ծածկուած, որուն շուրջը կը վառէին բազմաթիւ ջահեր: Յուղարկաւորներու բազմութիւնը լեցուցած էր տունը, իր ցաւակցական զգացումները յայտնելու հանգուցեալին այրիին եւ զաւակներուն: Թաղման կարգը կատարելէ ետքը, դագաղը վար իջեցուեցաւ եւ թափօրը կազմուեցաւ: Առջեւէն կ'երթային թաղապետական պաշտօնեաներ ու Պատրիարքարանի բարապաններ, յետոյ կու գային երկու կարգի վրայ Անարատ Յղութեան Կուսանաց վանքին աշակերտուհիները մոմ ի ձեռին եւ մայրապետներ: Տղաքներ բարձի վրայ կը տանէին նուիրուած բազմաթիւ պսակներ, զորս ղրկած էին.

Ս. Յովհան Ոսկեբերան եկեղեցին.
Ս. Յակոբի Հիւանդանոցը.
Տիկնանց Աղքատասէր Ընկերութիւնը.

Անտոն էֆ. եւ Օր. Նեկտար Կէօշէյեան
Գրէտի Ժէնէրալ Պանքա.
Պր. Պէռնար Թուպինի.
Կոմիտաս էֆ. Բէքմէզեան.
Տիկին Տիւրիւկ Մօըրըը.
Գ. էֆ. Սամանճի.
Տէր եւ Տիկին Ա. Ազարեան.
Պետրոս էֆ. Գույումճեան
Պր. Հաճիպիար էֆ.
Տէր եւ Տիկին Հարէնց.
Տիգրան էֆ. Կիւմիւշկերտան.
Տէր եւ Տիկին Հանրի Գալլոս.
Տր. Թորգոմեան.
Մ. էֆ. Տէվլէթ.
Միշէլ էֆ. Մըօըրըը.

Եւ ուրիշ բազմաթիւ պատկներ, որոնց անունները կարելի չեղաւ հաւաքել: Ասոնց կը հետեւէին դպիրներ, որոց մէջ էին նաեւ Մայր-եկեղեցւոյ Դպրաց դասէն ոմանք: Յետոյ կու գային 40 վարդապետներ Վենետիկի եւ Վիեննայի Մխիթարեան Միաբանութենէն, Անտոնեան եւ Զմմառեան Միաբանութենէն, աշխարհական կղերէն եւ երկու եպիսկոպոսներ Տ. Արսլանեան եւ Տ. Ճամճեան: Դագաղը ասոնց ետեւէն կու գար, բարձած կը տանէին հանգուցեալին ծառայութեան մէջ գտնուող տասը խոռուաթներ, որք հագած էին իրենց ազգային ոսկեճամուկ տարազը: Դագաղի ծայրերը բռնած էին Մկրտիչ էֆ. Խայեան, Օննիկ Պէյ Մըօըրըը,

Սագըրգ Յովհաննէս էֆ., Պառոն տը Վանտէօվոը, Օհան էֆ. Պաղտատլեան եւ Պր. Խվլյէնխտէս: Սգակիր կը հետեւէին հանգուցեալին երկու զաւակները, շրջապատեալ ընտանիքին բազմաթիւ բարեկամներէ, որոց մէջ կը նշմարուէին Փորթուգալ Միքայէլ էֆ. Պ. Լօռանտօ, Պ. Թուպինի, Պ. Գոսբի, Գալլատի Պէյ, Բախտարի Պէյ, Նուրեան Յովհ. էֆ., Արիկ էֆ. Ուսճեան, Կիւմիւշկէրտան Տիգրան էֆ., Գարակէօզեան Գրիգոր եւ Տիգրան էֆէնտիք, Ազարեան եղբարք, Նորատունկեան Գաբրիէլ էֆ., Մըսըրլը Օննիկ Պէյ, Հարէնց Նշան էֆ., Տիւզեան եղբարք եւլն, եւլն: Թափօրը մտաւ Ս. Յովհան Ոսկեբերան եկեղեցին, որուն մէջտեղ դրուած էր հոյակապ պատուանդան մը լոյսերու մէջ ողողուած. ամբողջ եկեղեցին սեւով պատած էր: Տէր Ազարեան Պատրիարք եկեղեցւոյ դռնէն դիմաւորեց դագաղը, օրհնած ջուր սրսկեց վրան: Արարողութեանց աւարտելէն յետոյ քառաձի մեռելակառքի մը մէջ դրուելով՝ փոխադրուեցաւ Ֆէրիգիւղի գերեզմանատունը: Յուղարկաւորները լանտօներով գացին գերեզմանատունը, ուր դագաղը առժամաբար տեղ մը դրուեցաւ, մինչեւ ի շինութիւն դամբարանին: Բոլոր ներկաները իրենց ցաւակցութիւնը յայտնեցին հանգուցեալին երկու զաւակներուն» (Հայենիք, 1893 Թ. 356):

Մէնմ. Ախպար կը գրէ. «Այսօր մեր

Ազգը մեծ կորուստ մը ունեցաւ Յակոբ Կէօ-
չէյեանի մահով: *Պոլսոյ ամէնէն մեծ դրա-
մատէրներէն մին էր:* Crédit Général Ot-
toman *դրամատան գլխաւոր վարիչներէն
մին ու ազգին եւ պետութեան մեծ ծառա-
յութիւն մատուցած եւ այլ եւ այլ շքանշան-
ներով զարդարուած էր: Շատ մը ընտանիք-
ներ հոգացած ու խնամած ըլլալով՝ այսօր
տուն տեղ եղած են: Եթէ ըսենք որ հանգու-
ցեալը Ս. Յովհան Ոսկեբերան եկեղեցւոյն
հոգին եղած է մինչեւ իր կեանքին վերջը՝
չափազանցած չենք ըլլար...»* (Մէնմ. Ախ-
պար, 1893 Թ. 2577):

*Իսկ* Փունջ *կը տայ.* «Հռոմէականն մե-
ծահամբաւ ազգային մը, Յակոբ էֆ. Կէօ-
չէյէան, *որ ժամանակէ մը հետէ* ծանր հիւան-
դութեամբ *անկողնոյ կը ծառայէր, չարաթ
երեկոյ կնքեց մահկանացուն ի հասակի* 74
*ամեայ... մեծաշուք թափորով կատարուե-
ցաւ յուղարկաւորութեան հանդէսը: Դա-
գաղն* 50*ի չափ պսակներով ու ծաղկեփուն-
ջերով զարդարեալ էր: Ներկայ էին բազմու-
թիւն եկեղեցականաց եւ ազգային ու օտար-
ազգի աշխարհականաց ամէն դասէ... Կէօ-
չէյեան Յակոբ էֆ.ի մահն մեծ ցաւ կը
պատճառէ ոչ միայն իւր ընտանեաց, ազգա-
կանաց ու բարեկամաց,* այլ եւ բազմաթիւ
կարօտելոց, որոց կ՚օժանդակէր գթով ու
գորովով... *Կայսերական կառավարութիւնն
ալ մեծարեց զինքն մինչեւ* Ողլայի առաջին

ստիճան *բարձրացնելով եւ* երկրորդ աստիճան Մէնիտիյէ պատուանշան *շնորհելով*» (Փունջ, *Կ. Պ.* 1893 *Թ.* 2341) :

*Յակոբ Կէօչէյեանի մահուան առթիւ կը գրէ մեր Հ.* Թադէոս վ. Թոռնեան, *Պոլսոյ Մեծաւորը* 1893 *Յունուար* 26 *Թուականով.* «*Ի* 21 (*Հ. ա.*) *ամսոյս վախճանեցաւ* Կէօչէյեան Յակոբ էֆ. ամաց 74*ից եւ ի* 23 *ամսոյս շքով մեծաւ կատարեցաւ սգալից յուղարկաւորութիւնն: Գեր. Արքայանեան էր հանդիսադիրն ի ճանապարհի եւ ընդ նմա Գեր. Ճամճեան, որ ի* 5 *աւուրց հետէ գտանի ի քաղաքիս: Էին իբրեւ* վաթսուն քահանայք *հրաւիրեալք, յորս* երկոտասան գաւազանակիրք եւ ես էի մին ի նոցանէ: *Գերերջ. Կաթողիկոսն դիմաւորեաց զննջեցեալն առաջի դրան եկեղեցւոյ Ոսկեբերանի եւ ինքն կատարեաց զպաշտօն յուղարկաւորութեան: Ճառ դամբանական ոչ խօսեցան եւ ի կողմանէ օսմ. տէրութեան չգոյր ոք ներկայ, քանզի ի վերջին ամս չէր նա* persona grata *առաջի Սուլթանին:* Զքնաղ ինչ տեսիլ ընծայեցուցանէր աչաց փառաւորութիւն կարի մեծ պսակացն զարդարելոց եւ կամելիա ծաղկամբք եւս: *Սգալից կառքն որ բարձեալ տանէին զննջեցեալն եւ բազմութիւնն կառացն հազիւ հազ կարացին երթալ մինչեւ ի գերեզմանատունն, քանզի ձիւնն իջեալ նստեալ էր թանձրութեամբ մեծաւ...*» (*Դիւ.* 1893 *Յունուար* 26) :

*Յակոբ Կէօչէյեան կը թաղուի Շիշլիի Ազգ· Գերեզմանատունը, ուր կը գտնուին նաեւ ամբողջ ընտանիքին շիրիմները, ինչպէս կը գրէ իր աղջիկը՝ Տիկ· Մարիամ Նազլը·* Toutes les tombes de la famille Keutché Oghlou se trouvent au cimetière de Péra à Chichli. La chapelle du dit cimetière a aussi été arrangé réparé par mon frère Aram, où il a donné l'autel et les tableaux.

*Որքան կ'երեւայ՝ Շիշլիի Ազգ Գերեզմանատան մէջ Յակոբ Կէօչէյեան եւ իր ընտանիքը* չունին տապանագիր–արձանագրութիւն, *զի այդպիսի բան մը չենք գտներ մեր Հ· Յակոբ Քոսեանի ծանօթ հաւաքածոյին մէջ: Հ· Քոսեան գտած է* մահարձան *մը* Յակոբ Կէօչէյեանի *մասին* միայն Ս· Յովհան Ոսկեբերան եկեղեցւոյ մէջ: *Ահաւասիկ ատիկա :*

*Անյոյս աչաց վէմս այս կոչէ*
*Խանց յերկրէս* Յակոբ Կէօչէ
*Զորոյ բաժակ քաղցր եւ մըրուր*
*Արբ գոհութեամբ զուարթ եւ ըմխուր*
*Ազնըւատոհմն այն եւ մեծհոգի*
*Առատ յօտարն եւ համազգի*
*Այլ որ վըստահ յապագան եւ յոյս*
*Քնընէ* գլխորանս եկեղեցւոյն
*Ծանիցէ զնա ընդ ամս երկար*
*Հոգաբարձու բարեյարդար*
*Յարում ուխտիւք եւ յիշեսցի*

*Յորչափ յինքեան էն պաշտեսցի*
*Մարդոյ զգօնի յաւերժ մնացուած*
*Տուրքն առ աղքատս եւ առ Աստուած*
*Ծն.* 1826 † 1893 *Յունուար* 9»:

*Հ. Յակոբ Ծ. Վ. Քոսեան, Գերեզմանատուն, անդ, էջ* 251:

*Յակոբ Կէօչէյեան իր մահէն առաջ փափագ յայտնած ըլլալով՝ Տիկին Էլիզա* 50 հատ ընտիր վերմակ կը նուիրէ Ազգ. Հիւանդանոցին (Հայրենիք, 1893 *Թ.* 391): *Տիկ. Պերճուհի կը գրէ որ հօրը մահէն վերջ* Ս. Ոսկերերան եկեղեցւոյ մէջ մշտնջենաւոր պատարագներ կը մատուցուին:

*Յակոբի մահէն վերջ* Տիկ. Էլիզա *իրենց ունեցած կալուածներուն ու հարստութեան կարգադրութեանց համար խորհրդատու կ'ունենայ փաստաբաններ, խորհրդականներ, քարտուղարներ եւ տնտեսներ: Դժուարութիւններ կը ներկայացնէր ժամանակի տեղական անորոշ դրութիւնը: Դժուար պայմաններու ստիպողութեան տակ, կը գրէ Տիկ. Մարիամ Նալը, Յակոբի հարստութեան մեծ մասը* — Մարմարայի մէջ կղզիներ, Ասիոյ մէջ անտառներ, Գարթալի մէջ հողեր (*որոնք կը գտնուէին Հայտար Փաշա-Անկիւրիա շոգեկառքի գծին քով*), Բոսփորի բարձունքին վրայ գտնուող գետիններ Պէպէքի մէջ, Մայրի անտառներ Զամլընայի մէջ — *ասոնք* բոլորը լքուեցան իբր անշահ իրեր, *որպէս զի խեղճ Տիկին մայրս կարենայ*

Պոլիս գտնուող կահկարասիներով ու տուներով զբաղիլ: Տիկ. Էլիզ հարստութեան մէկ մասը իր որդւոց վրայ կ'անցնէ եւ ինքը կը քաշուի Բերայի եւ Պէյքէքի մէջ մնացած երկու տները՝ իր Մարիամ աղջիկով, Արամ-Ստեփան որդւով եւ երկու տալերով, այն է՝ Երանիկ եւ Սոփիա:

Ամուսինի մահէն վերջ դեռ 17 տարի կ'ապրի Տիկ. Էլիզ եւ 1910 Դեկտ. 31ին կը կնքէ իր մահկանացուն խաղաղ մահով մը եւ վերջին անգամ արտասանելով սա բառերը. «Ո՜վ Տիրամայր Ս. Աստուածածին»:

Ինչպէս ակնարկեցինք վերը՝ Տիկ. Էլիզի մահարձանը չկայ Շիշլիի մէջ, ուր հաւանօրէն թաղուած է: Իր մահուան առթիւ որեւէ յիշատակութիւն չենք գտներ հայ թերթերու մէջ:

## Բ. ՊԵՏԱԿԱՆ ԱՆՁԸ

Յակոբ Կէօչէյեանի կենսագրական պատկերը տալէ վերջ՝ անցնինք նկատել զինքը իբրեւ թուրք պետական անձ: Իր սկզբնական գործի ասպարէզի մասին յիշատակութիւն մը չենք գտած: Գիտենք որ երիտասարդ հասակէն մտած է պետական փողե–րանոցի մէջ, ուր պաշտօնեայ էին նախապէս իր հայրը՝ Անտոն եւ Պետրոս Կէօչէյեան (Բ. Տոհմէն) եւ աշխատած է հոն բաւական երկար տարիներ: Մեր Դիւանին մէջ կայ նամակ մը 1856 թուականով, ուր կ'ըսուի.

«Յակոբ Կէօչէ Զարբխանա կ'աշխատի»: Ճիշդ է որ 1850ական թուականներուն երկու «Յակոբ Կէօչէ» գոյութիւն ունին. մին Անտոն Կէօչէի որդի՝ ծնած 1818ին եւ մեռած 1893 Յունուար 9ին, իսկ միւսը Խաչատուր Կէօչէի որդի (Բ. Տոհմ) ծնած 1799 եւ մեռած 1862 Մայիս 9ին: Սակայն այս երկուքէն առաջինն է որ Փողերանոց մտած եւ կայսերական ոսկերչապետ ալ եղած է: Ահա մեր ապացոյցը. Թուրք պետական պաշտօնէութեան տրուած բարձր պատուոյ տիտղոս մըն էր «էֆէնտի»ութիւնը (Der Kleine Beckmann, 1929, էջ 209): Արդ, յիշատակութիւններու ժամանակ ոչ մէկ պարագայի «էֆէնտի» կոչուած է Խաչատուրի որդի Յակոբ Կէօչէ, մինչդեռ Անտոնի որդի Յակոբ Կէօչէ «էֆէնտի» է ամէն անգամ որ իր անունը կը տրուի (Հմմտ. Մէճմ. Հաւատիս, 1860, Թ. 343: Մասիս, 1858 Թ. 326, — Տպագիր ցանկ «Աղքատասիրաց Եղբայրութեան», 1864: — Յ. Ասկէրեան, Պատմութիւն, էջ 109, եւ այլն):

Այս ապացոյցէն վերջ յիշենք Պոլսոյ ժամանակ թերթի վկայութիւնը թէ Յակոբ Կէօչէ Զարբխանայի (փողերանոց) մէջ աշխատած եւ Սուլթանին ոսկերչապետն ալ եղած է: Ժամանակ կը գրէ. «... Սուլթան Մէճիտի (1839—61) օրով պալատան ոսկերչութիւնը վարեց Կէօչէ Օղլու Յակոբ էֆէնտի, որ գոհարեղէններու մասին հմտութիւն

ունէր» (Ժամանակ, Կ. Պ. 1918 Թ. 3299)։ *Ասիկա շատ կարեւոր փաստ մըն է թէ Յակոբ առանձին ուշադրութեան նիւթ դարձուցած* է ոսկերչութեան *արուեստին ուսումնասիրութեան ու զայն հասցուցած այնպիսի մասնագիտութեան մը, որ կարող եղած է մինչեւ անգամ* սուլթաններու ոսկերչապետութիւնը վարելու։ Ժամանակի *այս տեղիքէն կարելի է հետեւցնել թէ Յակոբ Կէօչէ կանուխէն մտած է փողերանոցի գործերուն մէջ ու երկար ատեն, դուցէ 20 տարի մը աշխատած է հոն։ Անշուշտ այս ասպարէզը Յակոբի ապահոված է նախ անձնական* մեծ հարստութիւն մը, *երկրորդ* պատուաստիճաններ ու նշաններ, *որոնց մասին շատ քիչ ծանօթութիւն ունինք*։

*Արդէն 1858էն առաջ Յակոբ ստացած էր* էֆէնտիութիւն (Մասիս, 1858 Թ. 326), 1869*ին* Պէյ *տիտղոսն ունի* (Փնջիկ, 1869 Թ. 375)։ *Օրուան թերթը կը գրէ. «Ծիրքէթի Ոսմումիյէի Մալիէի Օսմանիէ նոր Ընկերութեան Տնօրէն Ժողովին անդամ ընտրեբ են Մըսըրլեան Անտոն ու* Կէօչէյեան Յակոբ Պէյերը» (*անդ*)։ *Տիկ. Պերճուհի կը գրէ որ իր հայրը ունէր* Իւլայի առաջին աստիճանը։ *Ասիկա ստացած է 1872ին, ինչպէս կը ծանուցանէ ուրախութեամբ ժամանակակից լուսատեղեակ հայ թերթը, գրելով. «Վեհ. Սուլթանը* Կէօչէյեան վսեմ. Յակոբ *էֆ.ին* Իւլայի առաջին աստիճանը շնորհեց» (Մա–

սխս, 1872 Թ. 1227) : *Մարխամ Նաղըը կը գրէ Հօրը ստացած պատուաստիճաններու եւ նշաններու մասին.* Mon père avait le Medjidié et l'Osmanié Tura et une décoration du Saint Siège et *quelque décorations étrangères*:

*Բացի պալատական ոսկերչութենէ՝ Յակոբ եղած է նաեւ նշանաւոր* սեղանաւոր *մը, այն է՝ դրամատէր* (banquier) : *Ինքը եղած է գլխաւոր* հիմնադիրը *Պոլսոյ* Crédit Général Ottoman *դրամատան, ինչպէս կը վկայեն ժամանակակից թերթերը, որոնցմէ մին կը գրէ. «Կէօչէյեան Յակոբ էֆ... դրամական հրապարակին վրայ շատ նշանաւոր տեղ մը գրաւեց* : Գրէտի Ժէնէրալ պանքային գլխաւոր հիմնադիրներէն եւ վարիչներէն մին եղաւ *եւ իր անունը կը մնայ Պորսային տարեգրութեանց մէջ»* (Հայրենիք, 1893 *Թ.* 355) : *Ասկէ շատ առաջ* Փունջ (1869 *Թ.* 423) *թերթը գրած էր թէ «Յակոբ Կէօչէյեան* երեւելի սեղանաւորներէն մին է» *Պոլսոյ մէջ*:

1870 *Մարտին պաշտօն կը ստանայ* Մեծեպարքոսին սեղանաւորն ըլլալու (Ծիածան, *Կ. Պ.* 1870 *Թ.* 120) :

*Իբրեւ սեղանաւոր՝ Յակոբ Կէօչէյեան տէր էր* մեծափարթամ հարստութեան: *Այդ մասին գաղափար մը տալու համար կը բաւէ յիշել միայն* 1870 Բերայի մեծ հրդեհին *դէպքը* : *Այդ հրդեհի առթիւ Յակոբ* 80,000

թրքական ոսկի կը կորսնցնէ, առանց կործանելու, *թէեւ ժամանակակից մը գրած է թէ «Կէօչէ Օղլու Յակոբ*, Հայ Կաթողիկէ մեծահարուստներէն 80 *հազար ոսկի մէկէն կը կորսնցնէ* եւ սնանկանալու վտանգի կը մատնուի» (*Յովաննէս Արքեպ. Նազլեան, Պատմական տեսութիւն Անարատ Յղութեան Հայ Քոյրերու Միաբանութեան վրայ, Պէյրութ* 1948, *էջ* 76): *Եթէ «սնանկանալու վտանգին մատնուէր»՝ չէր կրնար նա անմիջապէս իր տան դիմացը գտնուող հողը գնել եւ հոյակապ պալատանման շէնք մը բարձրացնել, ինչպէս գրեցինք վերը՝ տանելով Յակոբի աղջկան՝ Մարիամ Կորինալդիի գրութենէն:*

*Ուրիշ ապացոյց մը*: 1875*ին եւ* 1881*ին Օսմանեան պետութիւնը դրամի մեծ անկումի վտանգ մը կ՚անցնէ*: Կառավարական արժեթղթերը մեծ անկում մը կը կրեն *ու ժողովուրդը վախէն ամէն բան ձեռքէ հանել կ՚աշխատի*: *Յակոբ Կէօչէ*՝ իր պետութեան հանդէպ ունեցած հաւատարիմ զգածումէն դրդեալ՝ *դրամի անկումի վտանգին առջեւ առնելու համար այդ* արժեթղթերը կը գնէ՝ *անձնապէս* 1,000,000 թրքական լիրայի կորուստի ենթարկուելով (*Հմմտ. նաեւ Դիւ.* 1875 *Հոկտ.* 22 *եւ Նոյ.* 16, *ուր կ՚ենթադրուի այդ գումարը* 300,000*էն մինչեւ* 600,000 *լիրա*):

*Յակոբ Կէօչէյեան մեծ բարեկամու-*



ՏԻԿԻՆ ԷԼԻԶԱ
ԵՒ 3 ԱՂՋԻԿՆԵՐԸ ՊԵՐՃՈՒՀԻ, ԱՍՏԻՆԷ, ՄԱՐԻԱՄ

թեամբ կապուած էր Մուրատ եւ Ռէշիտ իշխաններուն հետ: Հսկայական գումարներ ծախսած կամ փոխ տուած է Մուրատին: Ահա թէ ինչո՛ւ Համիտ Բ. կը թշնամանայ իրեն դէմ ու աքսորի կը դատապարտէ զինքը՝ ընտրութիւնը Ցակոբին ձգելով թէ ո՛ւր կ՚ուզէ աքսորուիլ: Ցակոբ Վառնա կ՚ընտրէ, ուր կը մեկնի 1887ին իր Արամ որդւոյն, քարտուղարին ու ծառային հետ: Այս աքսորքի միջոցին Տիկ. Էլիզա աղերսագիր մը գրած է Համիտ Բ. Սուլթանին՝ խնդրելով որ ներէ ամուսինին ու զայն ընտանիքին շնորհէ: Տիկ. Էլիզա Կէօչէյեան այդ աղերսագրին կը կցէ ընտանեկան լուսանկար մը, որ կը ներկայացնէ Տիկ. Էլիզա եւ իր երեք դուստրերը — Պերճուհի, Աստինէ եւ փոքրիկն Մարիամ Նազլը (6 տարեկան): Կու տանք այս պատկերը:

5. ամիս յետոյ կ՚ազատի սակայն միջնորդութեամբ Իտալիոյ, Ֆրանսայի ու Ռուսիոյ դեսպաններուն:

### Գ. ԱԶԳԱՅԻՆ ԲԱՐԵՐԱՐԸ

Կէօչէյեան Գերդաստանը, իր հնագոյն շրջաններէն սկսած տուած է ապացոյցը իր ազգասիրութեան ու Ազգին յարումին: Ճիշդ է որ իր ունեցած մեծափարթամ հարստութեան համեմատ չէ եղած արդիւնքը իր ազգային բարերարութեանց, սակայն եթէ քովէ քով բերուին ու համադրուին Կէօչէյեաններու զանազան շրջաններու մէջ Ազգին ըրած

նուիրատուութիւններն ու շինութիւնները՝ պիտի համոզուի ամէն անկեղծ քննադատ թէ ստուգիւ Ազգային բարերարներու շարքին մէջ դասուելու արժանի է Կէօշէյեան Տունը:

Այսօր, երբ կը գրենք այս տողերը, Կէօշէյեան երբեմնի հոյակապ Գերդաստանը շիջանելու մօտ է: Հազիւ քանի մը անձեր մնացած են անոր վերջին սերունդներէն, որոնցմէ քաղուած տեղեկութիւնները լոկ փշրանքներ են հսկայ գանձուածին համեմատութեամբ: Հետեւաբար անհնարին է իսկական պատկերը գծել իրական անցեալի մը, որ նախատեսած չէ գրաւոր յիշատակարան մը աւանդել իր ամբողջական պատմութեան գոնէ որոշ շրջաններու մասին: Պիտի փորձենք, ուրեմն, մեր ձեռքն եղած հատուկտոր ծանօթութիւններով կազմել պատմութեանս այս գլուխն ալ:

1· Տիկ· Պերճուհիի հաւաստիացումով իր նախահայրերը իրենց բնակավայր Հայաստանի Հին – Նախիջեւանը վերջնականապէս լքելէ առաջ՝ հոն կանգնած են եկեղեցի մը, զոր տարիներ վերջ Գերապայծառ Հանեան առիթ կ՚ունենայ տեսնելու եւ ստուգելու որ այդ եկեղեցւոյ դրան վրայ գրուած է թէ Կէօշէյեանները շինած են եկեղեցին:

2· Անտոն Կէօշէյեան, հայր Յակոբ Կէօշէյեանի՝ 1830ական տարիներուն Հայ Կաթ· Համայնքի կազմակերպական շրջանին առաջիններէն կ՚ըլլայ ազգապատկան շէնքի

չինողներէն ։ Ս․ Յակոբի հողին վրայ տուն մը շինելով զայն Ազգին կը նուիրէ իբրեւ եկամուտ հիւանդանոցին (Հ․ Սահակ Վ․ Արապեան, Ս․ Յակոբ Հիւանդանոց, Վիեննա 1915, էջ 28) ։ — Անտոնի Տիկինը՝ Տիրուհի՝ էրկան մահէն վերջ կը շարունակէ անոր բարեսիրական գործը ։ Տիկ․ Պերճուհի կը հաստատէ որ իր մամը՝ Տիկ․ Տիրուհին է որ Ս․ Յակոբի տուներուն մեծ մասը կանգնել տուած է ։ — Հոս անցողակի յիշենք նաեւ Օր․ Երանիկի նուիրատուութիւնը կտակով, փափաքելով որ Ս․ Յակոբի մատուռը շինուի եւ ինքը հոն թաղուի ։ Իր կտակի բովանդակութիւնն է գոհարեղէններ՝ մօտ 2000 ոսկի արժէքով ։ Այս մասին խօսած ենք իր տեղը ։

3․ Յակոբ Կէօշէյեան, Անտոնի որդին, մեծ հոգ ու խնամք ունեցած է իր անուանակից Ս․ Յակոբայ Հիւանդանոցին, որուն իրական ու մնայուն բարերարն եղած է ։ 1859ին անդամ է «Ս․ Յակոբայ Աղքատանոցի Հոգաբարձութեան, որուն ցանկի գլուխն է ինքը ։ Թէ ո՛րքան տարիներ վարած է այդ պաշտօնը՝ չկրցանք ստուգել ։ Ահա այդ ցանկը․

Յակոբ Կէօշէյեան
Արթին Կիւղէլ Օղլու
Կարապետ Տաւուք Օղլու
Գասպար
Պետրոս Եաղլըքճեան
Մկրտիչ Սամանճը Օղլու

Միքայէլ Գ· Ալտունեան (Հ· Սահակ Վ· Սրապեան, անդ, էջ 93):

4· 1860 Ապրիլ 7ին հիմ կը դրուի Ս· Յովհ· Ոսկեբերան եկեղեցւոյ «Եւ ի յաւերժ Աստուածատէր Ազգիս» մագաղաթի վրայ «արձանագրութիւն» կը դրոշմուի անուններու, որոնց մէջ նաեւ «Անդամոց Առանձնաժողովոյ կարգելոյ յԱզգիս ի տեսչութիւն շինութեան եկեղեցւոյս», ուր կը տեսնենք գլուխ բազմած Յակոբ Կէօչէյեան եւ իր եղբայրը՝ Պօղոս Կէօչէյեան (Մէճմ· Հաւատիս, 1860 Թ· 343): Կէօչէյեանները մեծագումար նուիրատուութեամբ մասնակցած են այդ եկեղեցւոյ շինութեան, ինչպէս կը շեշտէ զայս Տիկ· Պերճուհի գրելով·

«Ս· Յովհան Ոսկեբերան քիլիսասընըն եափըլմասընա պէօյիւք քըսմընը քէնտի (Յակոբ Կէօչէյեան) խարճամըշտըր»:--Եկեղեցւոյ շինութեան գործին մէջ ամենէն մեծ արդիւնք ունեցող հետեւեալ ութը անձերը կը վարձատրուին Սրբազան Պապէն Ս· Սեղբեստրոսի Հրամանատարութեան շքանշանով·

Եաղլըքճեան Պետրոս
Կէօչէյեան Յակոբ
Կիւզէլ Արթին
Գասպար Պէյ
Տիւզգատէ Յովհաննէս
Կէօչէզատէ Արթին
Ալլահվէրտի Յովհաննէս

*Հաստունեան Անդրէաս* (Մէնմ. Հավատիս, 1867 *Թ.* 715)։

*Յակոբ Կէօչէ երկար ատեն, կարելի է ըսել մինչեւ մահը* Միւթէվէլլին *եղած է Ս. Ոսկերբերանին (Հ. Ս. Սրապեան, անդ, էջ* 198)։ *Իրմէ վերջ* Միւթէվէլլիի *պաշտօնը կը շարունակէ իր որդին՝* Անտոն։

*Իր նուիրատուութիւններուն ցանկին վերջը պիտի չգար, եթէ ուզէինք յիշատակել նաեւ այսպիսիները. «Յամի* 1870 *յիշատակի Յակոբայ էֆ. Կէօչէյեան Մասանց տուփս առ եկեղեցիս Սրբոյն Գրիգոր Լուսաւորչայ» (Համառօտ Պատմութիւն Օրթագիւղի Հայ Կաթ. Ս. Գրիգոր Լուսաւորիչ Եկեղեցւոյ. Կ. Պ.* 1941, *էջ* 15)։

5. ***Յակոբ Կէօչէյեան Ս. Յովհան Ոսկերբերան*** *եկեղեցւոյ բակին մէջ* 1863*ին* կը *շինէ* դպրոցի շէնք մը *ի յիշատակ* իր ծնողաց՝ Անտոնի եւ Տիրուհիի *եւ վաղամեռ եղբօր՝* Պետրոսի։ *Ահա տառը երկաթագիր արձանագրութեան Յիշատակարանը.*

ՅԱՒԵՐԺ ՅԻՇԱՏԱԿ
Ծնողացն Անտոնի եւ Տիրուհւոյ
Եւ եղբօր Պետրոսի
Յուսումն եւ յԱստուածպաշտութիւն
Ազգային մանկտւոյն
Կանգնեաց ի հիմանց զդպրոցս
Յակոբ Կէօչէյեան
*1863*

(*Հ. Ս. Սրապեան, անդ, էջ* 93)։

*Հոս կը ներկայացնենք Յակոբ Կէօչէյեանի մէկ լուսանկար պատկերը, զոր հաճեցաւ մեզ զրկել իր դուստրը՝ Տիկ. Պերճուհի Յովհաննէս Փաշա*:

*Ընենք այս առթիւ գովեստի յիշատակութիւն մ'ալ Յակոբ Կէօչէյեանի* եկեղեցասիրութեան *մասին. «Այսօրուան օրս, կը գրէ Ասկէրեան* 1868*ին, թէ որ մէկ քանի Ազգ. եկեղեցիներուն մէջ Աստուածային ժամասացութիւնները եւ Արարողութիւնները տակաւին կը կատարուին, ասոնց համար պէտք է* գլխաւորապէս առանձին շնորհս մատուցանել առատաձեռն բարերարութեանց եւ *փութոյն* Բարձր. Կէօչէֆ Յակոբայ էֆ.ին, որ Աստուածսիրութեամբ վառուած եկեղեցւոյ պայծառութեան հոգ կը տանի» (*Յ. Ասկէրեան, Պատմութիւն, Տփխիս*, 1868 *էջ* 109 *ծանօթ*):

6. *Յակոբ Կէօչէյեանի* կրթական գործի *հանդէպ ունեցած դերը մանաւորապէս կ'ուզէինք ընդգծել: Մ. Յովհ. Ոսկերերանի կից* ազգային դպրոցի մը *շինութիւնը յիշեցինք: Աւելցուցէք ատոր վրայ Կէօչէյեանց առատատուր նուէրները* Սամաթիոյ Հայ կաթողիկէ կրթարանին, *որուն առանձին* պահապանն ու պաշտպանն եղած են *Կէօչէյեանք: Սամաթիոյ Թաղային վարժարանի մէկ հանդէսին* — 1871*ին* — *Պօղոս Պ. Ճէվահիրճեան կը գոչէ ներկայ եղող եպիսկոպոսներուն. «Օրհնեցէք, ո՛վ Հարք Սրբա–*

*դանք, օրհնեցէք մասնաւոր* մեր պաշտպան բարերարները, *որոնց մէջ իրաւամբ* մասնաւորեալ են Կէօչէյեան Ազնուազարմ ընտանիքը» (Բուզանդեան Մէնմ. Հաւատիս, Կ. Պ. 1871 Թ. 647):

*Յակոբ Կէօչէյեանի սրտին փափաքն էր ուսման մէջ յառաջացող եւ տաղանդաւոր հայ ուսանողներուն պատեհութիւն տալ* եւրոպական բարձր վարժարաններու մէջ *կատարելագործելու իրենց ուսումն ու մասնագիտութիւնը: Ահա այդ նպատակով դրամագլուխ մը կը յատկացնէ* ուսանողական ռոճիկի (bourse), *ինչպէս կը գրէ ինձ Տիկ. Պերճուհի:*

## 7. ՅԱԿՈԲ ԿԷՕՉԷՅԵԱՆԻ ՍԵՐՈՒՆԴԸ

*Յակոբ եւ Էլիզա ունեցած են 5 զաւակ.* Անտոն, Արամ, Աստինէ, Պերճուհի, Նազլը Մարիամ:

1. Անտոն Պէյ.— *Ծնած 1866ին՝ մեռած է 1934ին* Նիս (*Ֆրանսա*): *Ամուրի մնացած է եւ դարձած Լուսաւորչական:*

2. Արամ Պէյ.— *Ծնած է 1868ին եւ ամուսնացած իր հօրեղբօր Յովսէփի դուստր Սրբուհիի աղջկան* Լիւսիի *հետ եւ ունեցած երեք զաւակ. ա)* Նադին (*չէ ամուսնացած, կ'ապրի Իտալիոյ Բրեշա քաղաքը*), *բ)* Ժակլին (*ամուսնացած է Իտալիոյ Բրեշա քաղաքի* „Baron Alessandro Monti della

corte“ի հետ եւ ունեցած աղջիկ մը՝ Beatrice, որ ամուսնացած չէ, կ'ապրի Միլան. (ժակկըլին մեռած է), դ) Յակոբ (մնացած է ամուրի եւ կը բնակի Iséo [Բրեշայի գաւառ]):

Արամ Պէյ ունեցած է ազգային գործունէութիւն. 1902ին անդամ է Բանկալթիի Օրիորդաց «Աղքատասէր» վարժարանին համար կազմուած «Պարահանդէսի Մասնաժողով»ին: 1914 Յունիսին կ'ընտրուի Հայ կաթ. Երեւելեաց 34 անդամներէ բաղկացած ժողովին անդամ (ժամանակ, 1914 թ. 1846): 1915ին եւ 1920ին ալ ընտրուած է անդամ Ազգ. Ժողովին (ժամանակ, 1915 թ. 2061. 1920 թ. 3748): 1922–24 տարիներուն հեռացած է Պոլսէն եւ հաստատուած Iséo (Իտալիա), ուր 1947ին կը կնքէ իր մահկանացուն: Իր տիկնոջ մահուան տարին անծանօթ է:

3. Աստինէ.— Ծնած է 1870ին եւ ամուսնացած Տիրան Կիւմիւշկերտեանի հետ: Տղայ չեն ունեցած: Տիրան մեռած եւ թաղուած է Պարիս, իսկ Տիկ. Աստինէ կ'ապրի եւ Հռոմ է:

4. Պերճուհի.— Ծնած 1866ին՝ ամուսնացած է Յովհաննէս Փաշա Գույումճեանի (Տե՛ս իր մասին «Գույումճեան եւ Թընկըրեան Գերդաստանները», Վիեննա 1951, էջ 12–19) հետ: Զաւակ չեն ունեցած: Իրենց վերջին բնակութիւնը եղած է Հռոմ, ուր 1933

Օգոստոս 11ին կը վախճանի Յովհաննէս Փաշա. իսկ Տիկ. Պերճուհի, որ «Տիպար մ'է Հայ Ազնուական Տիկնանց» եւ «ողբացեալ ամուսնոյն շուքն եղած ամէն տեղ» ու «հիանալի սփոփարարը» անոր (Աւետիք, Պէյրութ 1933, էջ 143), ողջ է եւ կը գտնուի Հռոմ: 1954ին ինծ կը գրէր նա. Je suis très souff-rante, ayant été frappée le 15 Mars par une trombose, qui m'a paralysé le coté droit. —

1955ին ալ ունեցայ մէկ-երկու թղթակցութիւն Տիկ. Պերճուհիի հետ, որ հաճեցաւ քանի մը թանկագին լուսաբանութիւններ տալ Կէօչէյեան Գերդաստանի մասին եւ ղրկել իր հօր՝ Յակոբ Կէօչէյեանի լուսանկարը: Դժբախտաբար անկէ ի վեր առիթ չունեցայ լուր մը ունենալ իր մասին: Ինքը ողջ է:

5. Մարիամ Նազըր.— Ծնած է 1881 Դեկտ. 14ին եւ ամուսնացած 1905 Յուլ. 15ին Պադուա քաղաքէն Կոմս Լէոպոլդո Կորինալդիի („Comte Leopoldo Corinaldi", diplomate ministre Plénipotencier) հետ: Ունեցած են երեք զաւակ. *Dario* (ամուսնացած է Marina Zonnaroի հետ. զաւակ չեն ունեցած), *Jolanda* (ամուսնացած է Տուրինցի Baron Camillo Andreiի հետ եւ ունեցած երկու զաւակ. *Franca* եւ *Giovanni* (երկուքն ալ մնացած ամուրի) եւ *Livio*, որ 1939–45ի համաշխարհային պատերազմին իբր խոստա-

կան բանակի սպայ գերի ինկած է եւ անհետ կորսուած :

Տիկին Մարիամ Պոլսէն ելած է 1905 Մայիս 24ին եւ մեկնած է Հռոմ : 1908ին կը վերադառնայ Պոլիս՝ տեսնելու համար մայրը : 1927 Օգոստոսին անգամ մըն ալ կը վերադառնայ Պոլիս՝ ստանալու համար Հայրենական այն փոքր ժառանգութիւնը, զոր Թուրքերը տակաւին չէին գրաւած իբր լքուած իր եւ իրեն իբր իտալացիի կը պատկանէր : «Պոլիս ոչ միայն մեր տան պատկանող մէկը չգտայ — ո՛չ ազգական եւ ո՛չ բարեկամ — այլ եւ մեր հօրենական տուները իբր նուէր տաճիկներուն անցած էին», կը գրէ Տիկ. Մարիամ : Տիկինը հաստատուած է Պադուա :

Կէօչէյեաններու պատկանող խոշոր շէնք մը իբրեւ «լքեալ գոյք» գրաւուած՝ կը յիշուի 1929ին : Պոլսոյ Նոր Լուր կը գրէ 1929 Փետրուար 20ին՝ «Կէօչէ Օղլուի լքեալ կալուածը» վերնագրի տակ ·

«Պոլսոյ պատժական Գ. դատարանը այսօր ժամը $3\frac{1}{2}$ին կարեւոր դատով մը պիտի զբաղի : Ամբաստանեալներն են Պոլսոյ Թափուի Տնօրէնութեան աւագ պաշտօնեայ Մէհմէտ Ճէմալէտտին եւ զետեղման տնօրէնութեան երկրաչափ Րէշիտ պէյերը : Ասոնց մասին եղած վերագրումը այն է թէ Բերա Մեծ փողոց գտնուող եւ Կէօչէ Օղլուներէ լքուած եւ 30է աւելի սենեակներ ունեցող եւ Սելանիկի փոխանակեալներէն Համտի

Կալիպ եւ Մուստաֆա Արիֆ պէյերու յանձնուելիք խոշոր շէնքին սենեակները եւ միւս բաժանումներն ու տարածութիւնը պակաս ցոյց տուած են: Սակէ զատ կը պնդուի թէ յիշեալ պաշտօնեաները առանց այդ շէնքին ամբողջութիւնը տեսնելու՝ տեսածի պէս կարծիք յայտնած են եւ զայն մասամբ քանդուած եւ նորոգութեան կարօտ ցոյց տուած են: Քէմալէտտին եւ Ռաշիտ պէյերը, որ պաշտօն ունէին այս շէնքին յանձնումի գործողութեան իբր հիմ ծառայելիք տարածութիւնը եւ արժէքը գնահատել, հակառակ թափուի տոմարներուն մէջ 22,000 ոսկի արժէք նշանակուած ըլլալուն, այս շէնքին եւ տակի խանութներուն համար միայն 8000 ոսկի արժէք գնահատած ըլլալով, պատժական օրէնքի 240րդ յօդուածին տրամադրութեան համաձայն դատարանի յանձնուած են» (Նոր Լուր Կ. Պ. 1929 Թ. 1535):

Ինչպէս կը տեսնուի՝ ներկայիս Ա. Տոհմի կէօչէյեաններէն ողջ են.

1. Տիկ. Պերճուհի Գույումճեան Փաշա, 2. Տիկ. Սաթինէ Կիւմիւշկերտան, 3. Տիկ. Մարիամ Նազլը Կորինալդի, 4. Զաւակներ Արամ Պէյի եւ Տիկ. Մարիամի:

*

Կէօչէյեան Գերդաստանը ունեցած է, ըստ Տիկին Մարիամ Նազլըի, իր յատուկ ազնուականութեան զինանշանը, որ կը ներկայացնէ կապոյտ գոյնով հեթանոսական

բագինի մը (*սեղան*), *որուն վրայ կը յաղթանակէ* ոսկեգոյն խաչ մը, *ունենալով* արծաթեայ դաշտ մը: *Վերեւը*՝ ոսկեգոյն մարգարտափայլ ժապաւէն մը:

## Ց· ԿԷՕՉԷՑԵԱՆ ԳԵՐԴԱՍՏԱՆԻ Բ· ՏՈՀՄԱԾԱՌԸ

*Կէօչէյեան Գերդաստանի* Ա· Տոհմի *պատմութիւնը աւարտեցինք: Անոր կազմութիւնը համեմատաբար դիւրին եղաւ, քանի որ ունէինք* կենդանի բարբառը *Տոհմի երկու անձերուն* — Տիկ· Պերճուհի *եւ* Տիկ· Մարիամ:

Բ· Տոհմի *պատմութիւնը կազմելու համար կը պակսի* կենդանի աղբիւրը, *զի ոչ մէկ* ողջ անձ *ծանօթ է մեզ Բ· Տոհմէն: Թերեւս կան տակաւին ողջ անձեր Թուրքիա կամ արտասահման, սակայն դժբախտաբար ծանօթ չենք ոչ մէկ անունի կամ հասցէի:*

*Հետեւաբար այս Բ· Տոհմի պատմութիւնը կազմելու ամար կը մնան միայն իբր աղբիւրներ* 1· *Պոլսոյ Հայ Կաթողիկէ Պատրիարքարանի ցանկը,,* 2· *մեր Դիւանի թղթակցութիւնները,* 3· *Քանի մը հեղինակներու դոյզն տեղեկութիւնները:*

## I· Բ· ՏՈՀՄԻ ՆԱԽԱՀԱՅՐԸ

*Բարեբախտութիւն մըն է չեշտել անմիջապէս թէ Պոլսոյ Հայ Կաթ· Պատրիարքարանը թանկագին ծառայութիւն մը մատու-*

*ցած է մեզ տրամադրելով իր Դիւանի մէջ եղած Կէօչէեան Գերդաստանի Բ.* Տոհմի *վերաբերեալ արձանագրութիւններն ալ: Որքան ալ հոն չեչտուած է թէ Բ. Տոհմի այս ցանկին «անձերը որեւէ կապ չունին» նախորդ —* Ա. Տոհմի *— անձերուն հետ՝ սակայն այս* երկրորդ ցանկին *գոյութիւնը ինքնին թանկագին լուսաբանութիւն մ'է Բ.* Տոհմի *ընդհանրապէս մթութեան մէջ մնացած պատմութեան համար:*

*Պատրիարքարանի այս երկրորդ ցանկին գլուխ դրուած է* Köçekoğlu Haçadur, *այսինքն* Կէօչէ Օղլու խաչատուր: *Ըստ մեզ բնաւ տարակուսելի չէ որ այս անձը Կէօչէեան Գերդաստանի Բ.* Տոհմի *նահապետն եղած ըլլայ: Զի այս ցանկին մէջ յիշուած անձերէն* գոնէ մէկին *— Յակոբ — համար ունինք* գրաւոր արտաքին վկայութիւն *մըն ալ թէ Յակոբ* որդին է խաչատուրի *եւ ոչ թէ* Կէօչէ Օղլու Յակոբի *(Ա. Տոհմի Նահապետը): Անհաւասիկ այդ վկայութիւնը — Հ. Սահակ Վ. Սրապեան (Ս. Յակոբ Ազգային Հիւանդանոց, Վիեննա* 1915, *էջ* 31) *խօսելով* 1830*ական թուականներուն Հայ Կաթողիկէ Համայնքի կազմակերպութեան մը վրայ՝ կը յիշէ Ս. Յակոբի Ազգ. Հիւանդանոցի Վարչութեան անդամները, ուր կը գրէ. «Քարտուղար Յովհաննէսի մահուամբ ալ* Կէօչէ Զատէ Յակոբին (որդի խաչատրոյ) *տրուեցաւ հաշուակալութիւնը»: Ահա այս* խաչատուրն

*է Կէօչէյեան Գերդաստանի* Բ. Տոհմագլուխը:

*Զենք հանդիպած որեւէ տեղ իր մասին տրուած ծանօթութեան մը թէ ո՞վ էր, որո՞ւն որդին, ո՞ր թուականին ապրած, ի՞նչ արհեստ կամ գործի ասպարէզ ունեցած, ի՞նչ ընտանիք կազմած, Պոլիս անցա՞ծ էր եւ ե՞րբ, ո՞ւր եւ ե՞րբ մեռած, ո՞վ էր իր տիկինը, որո՞նք իր զաւակները: 1830ին Հայ Կաթ. Համայնքի կազմութեան աշխատանքներու եւ տեղի ունեցած ժողովքներու մէջ իր անունին չենք հանդիպիր: Մեռա՞ծ էր արդէն: Իր* Տիկինը *ողջ է տակաւին 1861ին եւ 10,000 դուրուշ կը նուիրէ Պոլսոյ մեր Վանատան՝ իրր* մշտնջենաւոր պատարագուց *(Դիւ. 1861 Փետր. 27) անշուշտ իր հանգուցելոյ ամուսնին համար:*

*Պատրիարքարանի ցանկին համեմատ Խաչատուրի զաւակներն են.* 1. Սերովբէ, 2. Արթին, 3. Յակոբ: *Զենք կարծեր թէ ամբողջական ըլլայ այս ցանկը: Մեր կարծիքով Խաչատուր Կէօչէ Օղլուի զաւակներն են նաեւ.* 1. Պետրոս, 2. Յովհաննէս, 3. Թովմաս *եւ* 4. Վերոնիկա, *որոնք* չեն վերաբերիր Ա. Տոհմածառին, *հետեւաբար անշուշտ* Բ. Տոհմածառի *անդամներն են:*

## II. ԽԱՉԱՏՈՒՐԻ ՍԵՐՈՒՆԴԸ

*Տանք, ուրեմն, որքան կարելի է ամբողջական ցանկը* խաչատուր Կէօչէկ Օղլուի

*սերունդին: Իր զաւակներն են մեր կարծիքով.* 1. Արթին (Յարութիւն), 2. Յակոբ, 3. Թովմա (Թովմաս), 4. Սերովբէ, 5. Պետրոս, 6. Յովհաննէս *եւ* 7. Վերոնիկա:

1. Արթին (Յարութիւն) — *Խաչատուրի անդրանիկը Արթին ծնած է* 1799*ին: Դաստիարակութիւն, ուսում եւ սկզբնական գործի ասպարէզ անծանօթ են:* 1830*ին Հայ Կաթողիկէ ժողովուրդը ճանչցուելով իբրեւ* ազատ անկախ Համայնք մը՝ *կը սկսի ներքին կազմակերպական աշխատանքներու:* Սէրը, միութիւնը *օծած է ամբողջ զանգուածը:* Բոլորը միասին տառապած ըլլալով՝ *բոլորը* մէկ ամբողջութիւն *կը կազմեն* ցեղային, կրօնական եւ քաղաքական միութեամբ: *Երկա՜ր երկա՜ր զարերէ ի վեր չէր ճաշակած Հայութիւնը այսքան* սերտ միութիւն, *այսքան* համերաշխ եղբայրութիւն: *Ու ահա աննման համերաշխութեամբ ժողովքի նըստած* — առաջին Ընդհանուր Ազգային ժողովքը՝ 1831 *Փետր. 8ին — ընտրելու համար Համայնքի անդրանիկ* աշխարհական *վարչութիւնը, որ* «Երկոտասանից» *անունով պիտի յորջորջուէր: Ու կ՚ընտրուին* Երկոտասան իշխանք:

1. Քէօչէ Յարութիւն, 2. *Ելքէնճեան Մեսրովպ*, 3. *Թընկըր Կարապետի որդի Անտոն*, 4. *Մերհամեթճի Պետրոս*, 5. *Հիւսավէրտի Պետրոս*, 6. *Եազըճը Գրիգոր*, 7. *Մանասեան Ջենոբ*, 8. *Ջերոնիմոսեան*

Գէորգ, 9· Ապտուլլահեան Հիւմրիւզ, 10· Մուրատ Օղլու Յարութիւն, 11· Ինճիճի Գէորգ, 12· Փէքմէզ Անտոն (Դիւ. Վիենն. Մխիթ. Փետր. 23): Առնցմէ զատ ընտրուած էին նաեւ չորս իշխանաց իշխաններ· 1· Նազարէթ Ալլահվէրտի 2· Յակոբ Չէլէպի Տիւզ, 3· Յովսէփ Տաուութ, 4· Գրիգոր Գըլ–ճի (Անգ):

1838 Փետր. 3ին Ղալաթիոյ Յիսուս Փրկիչ նորաշէն Մայր–եկեղեցւոյ մէջ Հայ կաթողիկէ Ընդհանուր Ազգային Ժողով տեղի կ'ունենայ ընտրելու համար առաջին Նախագահ հանդուցեալ Նուրիճանի յաջորդ մը: Ներկայ են Ազգապետ – Պատրիարքը, Իշխանապետը, Գործակալք, Երեսփոխանք, Ամիրայք, գլուխներ կամ ներկայացուցիչներ Հայ Կաթող. Գերդաստաններու, եւ այլն, եւ այլն: Ու կ'ընտրեն երկրորդ Նախագահը՝ Պօղոս Մարուշ վարդապետը: Ըստ ազգային վաղեմի սովորութեան՝ բոլոր ժողովականները կը ստորագրեն Ժողովքին Մազպաթան (արձանագիրը) եւ Մահզարը (աղերսագիր), որոնք Ս. Աթոռին պիտի ղրկուին:

Ահա այս ժողովականներու եւ ստորագրողներու 50 Հայ Կաթ. երեւելիներէն մէկն է Կէօչէյեան Գերդաստանի Ա. Տոհմին գլուխը, Անտոն Քէօչէքեան եւ Բ. Տոհմին ներկայացուցիչը՝ Յարութիւն Կէօչէքեան (Յ. Ասկէրեան, Պատմութիւն. Տփխիս 1868, էջ 40–43):

1849 Սեպտեմբերին տեղի կ'ունենայ Ազգ. ժողովք մը՝ ընտրելու համար Նոր «Երկոտասանից ժողով» մը, որոնք կ'ըլլան.

Ա. Տիւզեան Միհրան Պէյ
Բ. Ալլահվէրտի Աբրահամ Ամիրա
Գ. Թընկըր Յովհաննէս էֆ.
Դ. Խըլճը Վիչէն Աղա
Ե. Կէօչէք Յարութիւն էֆ.
Զ. Խույումճեան Յովհաննէս Աղա
Է. Սինապեան (Ֆրան) Աղա Պէյ
Ը. Սինապեան Գասպար Պէյ
Թ. Տէօվլէթեան Ֆէյրաս Պէյ
Ժ. Հասունեան Մուսա Չէլէպի
ԺԱ. Կէօչէք Թովմա Աղա
ԺԲ. Մանիէլեան Յարութիւն Աղա (Յ. Ակէրեան, անդ, էջ 121–2):

Ինչպէս կը տեսնուի՝ Յարութիւն Քէօչէկ 1830էն սկսած գլուխն է Բ. Տոհմի Կէօչէկեանց եւ ամէն առթիւ կը ներկայացնէ զայն ազգային պատուաւոր պաշտօններու եւ գործունէութեանց մէջ: Արդէն 1830ին կը կրէ էֆէնտի տիտղոսը, նշան՝ թէ թուրք պետական պաշտօնէութեան մէջ գործունեայ դեր մը ունի եւ պատուոյ ու աստիճանի բարձրացած է: Ծանօթ չէ մեզ իր պաշտօնը թուրք պետութեան մէջ: Ու նաեւ իր անձնական գործը կամ արհեստը: Եթէ սեղանաւոր մը չէր՝ ապահովաբար եղած ըլլալու է մեծ վաճառական եւ մեծահարուստ անձ մը,

որուն հետեւանքով կը տեսնուի թէ Պոլսահայ հանրային կեանքի մէջ կարկառուն դէմք մըն է 1840–50ական թուականներուն : Ժամանակակից նամակները Քէօչէֆ Յարութիւնը կը ճանչնան Հայ կաթողիկէ հասարակութեան մեծամեծներէն մին (Տե՛ս Դիւ. Վիենն. Մխիթ. 1850 Սեպտ. 8) :

Վերը յիշած ենք թէ ինքը անդամ էր «Կէօչէյեան Ընկերութեան» մը, որ Աղաճամիի մօտ (Բերա) 2000 կանգուն հող մը ունէր, որուն վրայ չորս խանութ շինուած էր : Այդ գետինը կը փափաքէին գնել Պոլսոյ մեր Հայերը, բայց անկարելի կ'ըլլայ նիւթական պակասէն : Գետինը կ'արժէր 650,000 ղրշ. (Դիւ. 1856 Յունուար 10) : Ինքը Յարութիւն Կէօչէ Տողրու Եօլի վրայ 2500 կանգուն հող մ'ալ ունէր, զոր մեզի կ'առաջարկէին 1854ին (Դիւ. 1854 Օգ. 10) :

Յարութիւն Կէօչէյեանի ընտանեկան կեանքէն հետեւեալները ծանօթ են. Ամուսնացած է Թագուհի Մելիքեանի հետ եւ ունեցած չորս զաւակ, որոնք են, ըստ Պատրիարքարանի ցանկին. Խաչատուր, Գրիգոր, Զենոբ եւ Սոֆի : Սակայն ծանօթ է հինգերորդ մ'ալ — Թերեզօն, որ յայտնապէս կը յիշատակուի իբրեւ Յարութիւն Կէօչէյեանի աղջիկը : Եւ որովհետեւ Յարութիւն Կէօչէ երկու անգամ ամուսնացած է (այս պարագան Պատրիարքարանի Դիւանին անծանօթ է), հաւանօրէն այս հինգ զաւակներէն մին

իր երկրորդ կնոջմէն է։ Տեսնենք, ուրեմն, այս հինգ զաւակները։ Բայց նախ կարեւոր դիտողութիւն մը. ըստ Պատրիարքարանի Դիւանին Յարութիւն Կէօչէյեանի չորս զաւակները ծնած են 1837ին (Թրք. Թուական 1253), 1845ին (1261), 1846ին (1263) եւ 1849 (1266), մինչ մեր Դիւանին համեմատ Յարութիւն Կէօչէի կինը (Թագուհի) 1840ին կը վախճանի՝ չորրորդ զաւակը ծնանելէ 12 օր վերջ եւ կը թողու «չորս փոքրահասակ զաւակներ»։ Այս երկու անհամաձայն պարագաները չեն կրնար հաշտուիլ նաեւ անո՛վ որ մեր Դիւանին համեմատ Յարութիւն Կէօչէ երկրորդ անգամ ալ ամուսնացած ըլլալով՝ այս երկրորդ կինը 1850ին կը վախճանի։ Եթէ ճիշդ համարինք մեր Դիւանի թղթակցութիւնները՝ այն ատեն Պատրիարքարանի տուած Յարութիւն Կէօչէյեանի զաւակներու ծննդեան թուականները սխալ համարելու ենք։ Անշուշտ նաեւ հակառակէն։ Դժբախտաբար չունինք ուրիշ որեւէ աղբիւր այս կէտերը ճշդելու համար, մանաւանդ որ Գեր. Ն. Վ. Սեթեան մեզ կը հաւաստէ որ իր հաւաքած նիւթերու «թուականներուն եւ անձերու ճշտութիւնը անվիճելի է»։

Խնդիրն այսպէս ըլլալով՝ մեզի ուրիշ բան չի մնար, բայց եթէ եղած նիւթը տալ նոյնութեամբ։ Ահա, ուրեմն, Յարութիւն Կէօչէյեանի 5 զաւակներուն պատմութիւնը.

ա) Խաչատուր՝ ծնած 1253 (1837) մնացած

է ամուրի: 1864ին իր անունը կը գտնենք «Աղքատասիրաց Եղբայրութեան» անդամացանկին մէջ (Ցանկ անուանց անդամներու եւ կանոնագիր տպ. 1864, Կ. Պ.): Խաչատուր՝ Յարութիւն Կէօչէի անդրանիկը կը վախճանի 1864. Օգոստոսին ինչպէս կը ծանուցանէ նամակագիր մը. «Յարութիւն Կէօչէյեան եղէց որդին վախճանեցաւ» (Դիւ. 1864 Օգ. 29): բ) Գրիգոր՝ ծնած 1261ին (1845) ամուսնացած է Փիլոմենա Ագերեանի (Աւգերեա՞ն) հետ, որմէ կ՚ունենայ աղջիկ մը՝ Իսկուհի-Աննա: Այս Գրիգորը յետոյ կը թրքանայ եւ իր աղջիկը կը կոչուի Հաթիճէ Մէլիք. «Այժմ, կը գրէ Գեր. Ն. Վ. Սեթեան, Թըրքացած կողմը եւ Արամին (Ա. Տոհմ) կողմը դատի մէջ են ժառանգական հարցերով: Թըրքացած կողմը կը ջանայ ինքզինքը ազգական ցոյց տալ Արամին... Հաթիճէ Մէլիք որ եւ Իսկուհի Աննա՝ կ՚ապրի դեռ եւ 80 տարեկան է: Անոր աղջիկը կը հետապնդէ ժառանգական հարցը»: Ուրեմն՝ Իսկուհի-Աննա եւս ամուսնացած ըլլալով՝ ունեցած է աղջիկ մը:

Ազգականական կապի մասին խօսք չի կրնար ըլլալ, քանի որ երկուքը միեւնոյն կաթողիկէ Կէօչէյեան Գերդաստանի կը վերաբերին, մին անոր Ա. Տոհմէն, միւսը Բ. Տոհմէն: Լաւ պիտի ըլլար որ երկու կողմի անձերը համերաշխութեամբ իրարու հետ հասկցուին եւ խաղաղութեամբ վերջացնեն խնդիրը: Պոլսոյ մէջ եղած Կէօ-

չէյեան հարստութիւնը — տուն, կալուած, եւ այլն, ինչպէս տեսանք պատմութեանս ընթացքին, մեծ մասով Ա. Տոհմին կը վերաբերին: Այն որ երկուքին ալ հասարակաց եղած է — օրինակ՝ Աղանեամի գետինը — համեմատաբար մեծարժէք բան մը չէ: —

Գրիգորի մահուան թուականը անծանօթ է: գ) Զենոբ՝ ծնած է 1263ին (1846) եւ ամուսնացած Թերէզ Խուրտանեանի հետ: Զաւակներուն մասին տեղեկութիւն չունինք: Զենոբ եղած է փաստաբան մը եւ գործած 1890ական թուականներուն: Իր եւ իր կնոջ մահուան տարին անծանօթ է: դ) Սոֆի՝ է չորրորդ զաւակը Յարութիւն Կէօչէյեանի, ծնած, ըստ Պատրիարքարանի Դիւանին 1266ին (1849), իսկ ըստ Վիեննայի մեր Դիւանին՝ Յարութիւն Կէօչէյեանի Տիկինը 1840 Յունուար 9ին իր չորրորդ զաւակը ծնանելէ 12 օր վերջ կը վախճանի: Ահա այս մասին նամակի մը տուած տեղեկութիւնը, գրուած 1840 Յունուար 22ին Պոլսոյ մեր վարդապետներէն Հ. Անտոն Դանեանէ, որ եղած է տանեբէց եւ խոստովանահայր բոլոր Կէօչէյեաններուն, այսինքըն՝ թէ՛ Ա. Տոհմին եւ թէ Բ. Տոհմին: Հ. Անտոն կը գրէ Պոլսէն՝ Վիեննա Գեր. Արիստակէս Ազարեանի.

«Յեռանդն վախճանեցաւ Տիկ. Քէօչէկեան Արթինի աղայի, թողեալ զչորս փոքրահասակ մանկունս որք, յ12երորդ աւուր

ծնանելոյ զչորրորդ զաւակ իւր ի կոծ մեծ համօրէն քաղաքիս ընդ ձեռամբ տառապելոյս» (*Դիւ. Վիեն. Մխիթ.* 1840 *Յունուար* 22) :

Սոփի Կէօչէյեան *ամուսնացած է* Անտոն Գրլնեանի *հետ : Հարսանիքը տեղի ունեցած է* 1856 *Յունուարին : Իր հայրը՝ Յարութիւն Կէօչէ՝ մեծածախս հանդիսութեամբ կատարեր է այս հարսանիքը : Մասնաւոր փայլ մը տալու համար անոր՝ հրաւիրեր է Հայ Կաթ. Նախագահը, Պատրիարք – Ազգապետը եւ* 28 *քահանայ, որոնց մէջ են նաեւ Պօլսոյ մեր հայրերէն չորսը : Եկեղեցականներու այս բազմութեան տուած է ճոխ խնճոյք մը՝ նպատակ ունենալով.* «Առ ի առնուլ զօրհնութիւն եւ զաղօթս քահանայից» : *Տանք այժմ ժամանակակից Թղթակցին տեղեկատուութիւնը այս մասին : Պօլսէն կը գրէ մեր Հայրերէն մին* 1856 *Յունուար* 16 *Թուականով.* «*...Աղայն առնէ զայս խնջոյս վասն* հարսանեաց աղջկան իւրոյ, զոր տայ Քրլնըր Անտոնիկ Աղայի, եղբօրորդւոյ Վիչէն աղայի, առ ի առնուլ զօրհնութիւն եւ զաղօթս քահանայից» (*Դիւ.* 1856 *Յուն.* 16) :

Գրլնեանները *հին, շատ ազգասէր, եւ գործունեայ Գերդաստան մը կը կազմեն, որոնցմէ մեզ ծանօթ հնագոյն անձերն են* Գրիգոր Գրլնը († 1837 *Օգ.* 24) *եւ իր եղբայրը՝* Վիչէն Գրլնը : *Կէօչէյեան Սոփիի*



ՏԻԿԻՆ ԹԵՐԵԶՕՆ ԵՒ ԻՐ ԸՆՏԱՆԻՔԸ

փեսայ՝ Անտոն Գըլնը (ծն. 1819 † 1884 Նոյ. 19) որդին է Գրիգոր Գըլճըի:

1856 Սեպտեմբերին Պոլսոյ մեր Հայրերը Մեծ-կղզիի վրայ այգի մը կը գնեն: Եւ որովհետեւ գետինը անձի մը վրայ գրուելու էր՝ յարմար կը տեսնուի գետինը գնելու «յանուն Յարութիւն Կէօչէյեանի դստեր, որ հարսն է Վիչէն Գըլնըի» (Դիւ. 1856 Սեպտ.): Գըլճեանք տուն ունէին Մեծ-կղզիի վրայ եւ կարեւոր դեր խաղացած են Մեծ-կղզիի հայ կաթ. Մատուռին շինութեան մէջ:

Անծանօթ է մեզ թէ Սոֆի եւ Անտոն զաւակ ունեցա՞ծ են: Ասոնց մահուան թուականն ալ չենք գտներ, դի չունին Շիշլիի տապանագիրներու ցանկին մէջ (Հ. Յ. Քոսեան, անդ) մահարձան մը: Ե) Թերեզօն: Յարութիւն Կէօչէ, ինչպէս յիշեցինք վերը, ունեցած է հինգերորդ զաւակ մ'ալ, որ կը կոչուի Թերեզօն: Ասոր անունը անծանօթ է Պատրիարքարանի Դիւանին: Անծանօթ մնացած է հոն նաեւ թէ Յարութիւն Կէօչէ երկրորդ ամուսնութիւն մ'ալ կնքած է՝ առաջինին մահէն վերջ: Դժբախտաբար այս երկրորդ կնոջ անունը կը մնայ մեզի ալ անծանօթ: Բայց գիտենք թէ այս երկրորդ կինը 1850 Հոկտեմբերին կը վախճանի: Դարձեալ մեր Հ. Անտոնն է, Կէօչէյեանց հոգեւոր հայրը, որ կը հաղորդէ այս տեղեկութիւնը, գրելով 1850 Հոկտ. 18 Թուակիր նամակով. «Զերկուս եօթնեակս կացեալ առ հիւանդին,

որ է կին Յարութիւն Աղայի Քէօշէկեան եւ փոխել նորա առ Տէր՝ յանպատմելի ցաւ եւ կսկիծ ամենեցուն···» (*Դիւ.* 1850 *Հոկտ.* 18) :

*Թերեզօն այս երկրորդ կնոջմէն* չի կրնար ըլլալ, *զի արդէն* 1852–*ին* կը պսակուի *Ալլահվերտեան Գրիգորի հետ: Եթէ այս երկրորդ կնոջ աղջիկն համարինք Թերեզօն՝ սա* 1852*ին կ'ըլլար* 12 *տարեկան լոկ, ընդունելով թէ Յարութիւն Կէօշէ արդէն* 1840–*ին կնքած էր իր երկրորդ ամուսնութիւնը, այն է՝* իր առաջին կնոջ մահուան տարին: *Հետեւաբար հարկ է ընդունիլ թէ Թերեզօն Յարութիւն Կէօշէյեանի* առաջին կնոջմէն՝ Տիկ. Թագուհիէն (*ծն. Մէլիքեան*) *է եւ* մին այն չորս զաւակներէն, *որոնց* չորրորդը *ծնանելէ* 12 օր վերջ *կը վախճանի Տիկ. Թագուհի, ըստ տեղեկութեան ժամանակակից Պոլսոյ մեր թղթակցին, ինչպէս տեսանք վերը: Աւելցնենք նաեւ թէ Տիկ. Թագուհիի վերապրուած այն* չորս զաւակներէն — *մին զաւակն ըլլալու է Յարութիւն Կէօշէյեանի* երկրորդ կնոջ: *Այս պարագային հաւանական է թէ* Սոփի *այդ երկրորդ կնոջ զաւակն է* :

*Թերեզօնի ծննդեան թուականը կրնայ ըլլալ* 1834–6: 1850*ին կը նշանուի Աբրահամ Ալլահվէրտեանի երեց որդւոյն՝* Գրիգորի (*ծնած* 1820*ին*) *հետ: Մեր Հ.* Անտոն *կը գրէ Պոլսէն* 1850 *Յուլիս* 30*ին.* «(Թերեզօն) դուս–

տըր Յարութիւն Աղայի Քէօչէկեան՝ հարսնախօսեալ է երէց որդւոյ Աբրահամ Աղայի Ալլահվէրտեան եւ է իմ խոստովանադուստր: Ծնողք նորա յանձնեցին պատրաստել փութով զմի հայերէն աշխարհաբար աղօթագիրք եւ զմի արծաթի վարդարան...» (Դիւ. 1850 Յուլիս 30):

Ասոնց պսակը տեղի կ'ունենայ 1852 Փետրուարին: Այս առթիւ կը գրէ Պոլսէն մեր Հ. Դաւիթ Ուզունեան. «Յանցելումն կիւրակէի էին հարսանիք ի տան Ալլահվէրտեան Աղայի, այն է անդրանիկ որդի նորա Գրիգոր Աղա ամուսնանայ ընդ դստեր Քէօչէկեան Արդին Աղայի: Գլխաւոր հրաւիրեալն էր Պատրիարք Գերպ., ապա կոչեցաւ եւ Գերպ. Նախագահն՝ աջակցութեամբ 18 քահանայից» (Դիւ. 1852 Փետր. 15):

Գրիգոր եւ Թերեզօն ունեցած են 8 զաւակ, չորս մանչ եւ չորս աղջիկ (Տե՛ս ասոնց մասին. «Ալլահվէրտեան Գերդաստանը». Վիեննա 1957, էջ 85–90): Գրիգոր մեռած է 1873ին, իսկ Թերեզօն՝ 1915 Յուլ. 6ին: Ասոնց սեպհական տունը Մեծ-կղզի էր: Վիեննայի մեր Թանգարանի ազգային բաժինի լուսանկարներու հաւաքածոյին մէջ ունինք թէ՛ Գրիգորի եւ թէ Թերեզօնի լուսանկարները: Տիկ. Թերեզօն լուսանկարուած է իր չորս զաւակներուն, մէկ հարսին եւ երկու թոռներուն հետ, զոր տուինք քիչ մը վերը:

Յարութիւն Կէօչէյեանի մահուան թուականը անծանօթ է։

2. Յակոբ.— Խաչատուրի երկրորդ որդւոյն՝ Յակոբի ծնած տարին է 1216 (1801)։ Որքան կ՚երեւայ՝ մնացած է ամուրի։ 1830ի ատենները վարած է Ս. Յակոբ Ազգ. Հիւանդանոցի վարչութեան մէջ քարտուղարի պաշտօնը (Հ. Սահակ Վ. Արապեան, Ս. Յակոբ Ազգ. Հիւանդանոց, Վիեննա 1915, էջ 31)։ Ազգային գործերու մէջ միշտ դեր մը ունեցած է (Հմմտ. օրինակ՝ Մէճմ. Հավատիս, 1860 Թ. 343) մինչեւ իր մահը։ 1862 Յուլիսին ծանրապէս կը հիւանդանայ. Յուլ. 23ին բերնէն արիւն կու գայ. իսկ Օգոստոս 8–9ին կը վախճանի։ Հ. Մանուէլ Տէվրիշեան կը տեղեկագրէ. «Յակոբ Աղա Կէօչէյեան ննջեաց ի Տէր ի գիշերի 8–9 աւուր ամսոյս, զոր ի վաղին տարեալ ի Յիսուս փրկիչ՝ յետ Զայնաւոր պատարագի՝ հանին թաղեցին ի Սուրբն Յակոբ. Տէր հանգուսցէ զհոգին արդարոյն» (Դիւ. 1862 Օգոստոս 13)։

3. Թովմա (Թովմաս) .— Պատրիարքարանի ցանկին մէջ չկայ իր անունը, սակայն մեր կարծիքով որդին է Խաչատուրի։ Ծնած է 1800ին։ Կը յիշուի ազգ. գործերու մէջ 1840–ական տարիներէն սկսած։ 1849ին կ՚ընտրուի անդամ «Երկոտասանից» Կէօչէֆ Թովմա Աղայ (Յ. Ասկէրեան, Պատմութիւն, անդ՝ էջ 122։ — Հմմտ. նաեւ անդ՝ էջ 269)։ 1855 Մարտ 2ին տեղի ունեցած ազգ. համերաշխ

ընտրութեան ատեն Թովմա Կէօչէք մին է Ազգին ընտրելիներէն։ Կը ներկայացնենք «Երկոտասանից» այս մարմինը, որ պատմական նշանակութիւն ունի․

1․ Ալիքսանեան Տիւզ Տիրան Պէյ
2․ Պետան Պէյ
3․ Սինապեան Գասպար Պէյ
4․ Սինապեան Աղա Պէյ
5․ Կիւզէլ Յարութիւն Աղա
6․ Պիլէզիկճի Յովհաննէս Աղա
7․ Տամատ Յովհաննէս Աղա
8․ Հասունեան Մուսա Չէլէպի
9․ Թընկը՞ Բուզանդ Աղա
10․ Թոփուզ Պետրոս Աղա
11․ Տէօլվէթ Ֆէյրատ Աղա
12․ Կէօչէյեան Թովմա Աղա

(Յ․ Ասկէրեան, Պատմ․ անդ՝ էջ 362։— Համմտ․ Հ․ Ս․ Սրապեան, անդ՝ էջ 83)։

Իր անուան կը հանդիպինք ուրիշ զանազան ազգ․ գործունէութիւններու մէջ։ 1847ին բաժանորդագրուած է մեր «Եւրոպա» թերթին Անտոնի (Ա․ Տոհմածառ) որդիներուն եւ իր Յակոբ եղբօր հետ (Դիւ․ 1847 Յունիս 19)։ Օրթագիւղի մէջ ըլլալով իր բնակարանը (Կոմիտաս Վ․ Զարգճեան, Օրթագիւղի Հայ․ կաթող․ Ս․ Գրիգ․ Լուսաւորիչ եկեղեցւոյ համառօտ Պատմութիւնը․ Կ․ Պ․ 1941, էջ 6), կարեւոր մասնակցութիւն ունեցած է թաղին Հայ կաթող․ Ս․ Գրիգ․

Լուսաւորիչ *եկեղեցւոյ չինութեան մէջ* (Ս. Յակոբ, Կ. Պ. 1957 Թ. 7, էջ 151), *ուր ունի հետեւեալ Յուշարձանը.*

Թովմաս Կէօչէյեան

Մնեալ 1800 եւ վախճանեալ 1869 Մայիս 1
Որ ի յերդերուկ յայամ դարու
Եւ խստատոմ եւ ուղղութեամբ կացեր արժան
Ընդէ՞ր զայս վէմ
Դանդաղեցեն ճեզ նուիրել
Թաղծեալ որդեակք եւ ամուսին կողկողագին

(*Կոմիտաս Վ. անդ՝ էջ* 24):

*Ինչպէս կը տեսնենք՝ Թովմաս Կէօչէ-յեան* ամուսնացած էր եւ ունէր տղաքներ: *Ո՞վ էր իր կողակիցը, որո՞նք էին իր տղաքը:* — *Տիկնոջը անունը որեւէ տեղ յիշատակուած չենք գտած: Բայց իր տղոց անունները կը գտնենք 1876ին հրատարակուած Հայ կաթողիկէ Համայնքին «Ընտրողաց եւ Ընտրելեաց» ցանկին մէջ, ուր են.* 1. Պօղոս Թովմաս Կէօչէյեան, 2. Կոմիտաս Թովմաս Կէօչէյեան, 3. Պետրոս Թովմաս Կէօչէյեան, 4. Մկրտիչ Թովմաս Կէօչէյեան, 5. Յովհաննէս Թովմաս Կէօչէյեան: *Հաւանականօրէն աղջիկներ ալ ունեցած ըլլայ:*

*Թովմաս մեռած է* 1869 *Մայիս* 1*ին: Չենք գիտեր թէ ո՞ւր թաղուած է: Չկան Շիշլիի գերեզմանատան Յուշարձաններու*

ցանկին մէջ (Հ. Յ. Քօսեան, անդ) իր եւ իր ընտանիքին տապանագրերը:

4. Սերովբէ.— Ծնած է 1222ին (1807) եւ մեռած է ամուրի: Իր կեանքի մասին հազիւ քանի մը յիշատակութիւններ գտած ենք: Ս. Յակոբի դպրոցին բացման առթիւ 324 դրշ. նուիրած է (Հ. Ս. Վ. Սրապեան, Ս. Յակոբ անդ՝ էջ 118): 1852ին Պոլսոյ մեր Հայրերուն կը յանձնէ 20,000 դուրուշ՝ իբր մշտնջենաւոր պատարագուց, որպէս զի ամսէ ամիս պատարագ մը մատուցուի (Դիւ. 1852 Դեկտ. 30): 1863ին տկար է Սերովբէ Կէօչէյեան եւ Տրիեստի վրայով Պարիս կը մեկնի՝ ջերմուկներն երթալու համար (Դիւ. 1863 Մայիս 10): 1867ին կը կնքէ իր մահկանացուն եւ Ա. Տոհմի Յակոբ Կէօչէյեան իր հոգւոյն համար մշտնջենաւոր պատարագուց կու տայ (Դիւ. 1867 Դեկտեմբեր 20), յայտնի ապացոյց՝ թէ Ա. եւ Բ. Տոհմի Կէօչէյեանները իրարու ազգական էին եւ իրենք ալ այդպէս կը նկատէին:

5. Պետրոս.— Խաչատուրի որդին կը համարինք Պետրոս Կէօչէյեան մը, որ կը յիշուի մեր Դիւանի թղթակցութեան մէջ 1825ին եւ 1830ին: 1825 Նոյ. 10 թուական կրող թղթակցութեան մը մէջ կը յիշուի թէ Պետրոս Կէօչէյեան մտերիմն է Գազազ Յարութիւնի, որ կայսերական փողերանոցի վարիչը եւ Սուլթաններու ոսկերչապետն էր: Այս մտերմութեան կապը ապացոյց մ'է թէ

Պետրոս Կէօչէ բարձր պաշտօն ունէր կայսերական փողերանոցի մէջ եւ մեծանուն անձ մըն էր : 1830ին Պետրոս Կէօչէյեան կը պսակուի . Հարսանեաց հանդէսը մեծաշուք փառաւորութեամբ կը կատարուի : Արթին Գազազի հետ իր մտերմութիւնը եւ պաշտօնակցութիւնը այնքան սերտ է որ մեծանուն Արթին Գազազ Ամիրա իրեն պատիւ կը համարի Պետրոս Կէօչէի պսակին առթիւ կնքահայրութիւն ընելու : Պսակը կը կատարէ մեր Հ. Անտոն Դանեան, որ հակիրճ բառերով կը հաղորդէ հարսանիքի դէպքը : Ահա իր տողերը, գրուած 1830 Օգ. 11ին. «...Ի միւս եօթնեկին ինձ անկ եղեւ պսակել զՔէօչէկ Պետրոս Աղայն, վերակացու արկեղ փողերանոցին, որոյ կնքահայր պարտ էր լինել Խազազն» (Դիւ. 1830 Օգ. 11) :

Ինչպէս կը տեսնուի՝ Պետրոս՝ կայսերական փողերանոցի վերակացուն է, այսինքն՝ պետը, տնօրէնը : Տիւզեաններու դժբախտ դէպքէն վերջ՝ 1820ին այդ պաշտօնը յանձնուած էր Պօղոս Պիլէզիկճեանի : Կ'երեւայ թէ անոր յաջորդած է Պետրոս Քէօչէկ եւ այս կապակցութեամբ մտերիմ բարեկամութիւն հաստատուած է Գազազին եւ Պետրոսին միջեւ : Չենք գիտեր թէ ե՞րբ մտած է Պետրոս փողերանոցի գործին մէջ : Երբ նկատի ունենանք որ ան 1830ին «վերակացուն» է փողերանոցի՝ հարկ է ենթադրել թէ երկար տարիներու աշխատութիւն մ'ու-

նեցած է հոն եւ հետզհետէ վստահութիւն շահելով հասած է մինչեւ «վերակացութիւն»: Թէ ի՞նչ պատիժներ ու պատուանշաններ ստացած է ան այդ պաշտօնին կապակցութեամբ՝ անծանօթ կը մնայ մեզ: Զենք գիտեր նաեւ թէ մինչեւ ե՛րբ մնացած է այդ պաշտօնին մէջ: Տարակոյս չկայ թէ փողերանոցի «վերակացութեան» պաշտօնով Պետրոս եղած կ՚ըլլայ հրապարակի վրայ ճանչցուած մեծանուն եւ երեւելի անձ մը: Զարմանալի է որ Ազգային գործերուն մէջ մտած չէ Պետրոս Բէօշէկ. եւ ոչ մէկ առթիւ կը տեսնենք իր մասնակցութիւնը կազմակերպական ժողովներու մէջ:

5. Անտոն չէ յիշած Պետրոսի Տիկինը, որ ուրիշ կողմէ ալ անծանօթ մնացած է: Ունեցա՞ծ են զաւակ: Ե՞րբ մեռած եւ ո՞ւր թաղուած են: — Զունինք դրական պատասխան:

6. Յովհաննէս. — Պատրիարքարանի ցանկին մէջ չկայ այս անունը իբրեւ Խաչատուրի որդի: Իր մասին հետեւեալ ծանօթութիւնները ունինք: Մեր Դիւանի թղթակցութիւններէն կը տեսնուի թէ Յովհաննէս եղբայրն է Խաչատուրի որդի Յակոբի (Դիւ. 1860 Ապրիլ 25), եղբայրն է Խաչատուրի որդի Յարութիւնի եւ Սերովբէի (Դիւ. 1861 Յուլ. 28, Օգ. 13), հետեւաբար Յովհաննէս է վեցերորդ զաւակը Կէօշէյեանց Բ. Տոհմագլուխ Խաչատուրի:

Յովհաննէս Կէօչէի անունը կը գտնենք Ս․ Յակոբ Հիւանդանոցի 1864–72 տարիներու Հոգաբարձութեան ցանկին մէջ (Հ․ Ս․ Սրապեան, անդ՝ էջ 113), որմէ կը տեսնուի թէ ազգ․ կեանքի մէջ ունեցած է գործունէութեան բաժին մը։

Հաւանօրէն իր բնակարանը Օրթագիւղ էր եւ մասնակցած է Թաղին Հայ կաթ․ Ս․ Գրիգոր Լուսաւորիչ եկեղեցւոյ շինութեան, զի նոյն եկեղեցւոյ եղած նուիրատուութեան ցանկին մէջ Աւետարանի մը վրայ գրուած է․ «Յիշատակ է այս Կէօչէյեան Յովհաննէսի․ Միջագիւղ 1870 Յունուար 1» (Կոմիտաս Վ․ Զարգճեան, անդ՝ էջ 16)։

Յովհաննէս Կէօչէ ամուսնացած էր․ մեզի անծանօթ է իր կնոջ անունը։ Զաւակներէն մին կը կոչուի Գրիգոր, որ 1860ին 18 տարեկան էր, հետեւաբար ծնած 1842ին։ Կէօչէյեաններու երկարամեայ հոգեւոր հայր մեր Հ․ Անտոն Դանեան տղուն հօր կողմէ նամակ մը գրելով Գեր․ Յակոբոս Արքեպ․ Պողաճեան Աբբահօր՝ ցաւով կը յայտնէ որ տղան գէշ ընկերներու հետեւելով՝ բարոյապէս աւրուած է․ կը խնդրէ որ Վիեննայի կամ ուրիշ քաղաքի մը ուղղութեան դպրոց մը դնելու օգնէ՝ փրկելու համար տղան կորուստէ։ Այդ առթիւ կը շեշտէ թէ տղուն հայրը՝ Յովհաննէս Կէօչէյեան մեր Միաբանութեան բարեկամ անձ մըն է։ Ահաւասիկ Հ․ Անտոնի նամակը․

«Գրիգոր ... զակատեալ զհետ չար ընկերաց՝ մերձ է գլխովին կործանման: Հայր նորա խնդրէ եւ պաղատի Միաբանութեան մերում (որոյ բարեկամ է), զի դուցէ ի Վիեննա կամ ի Վենետիկ եւ կամ ի Թրիեստ տուն հրապարակական եւ կայսերական ուղղութեան, այն է Casa di Corregiane եւ թէ ընկալցի՞ն զպատանին, հայ ուղղափառ, վճարեալ զի՛նչ եւ խնդրեսցեն, զատրեկան ծախս, որպէս զի ուղղեսցի խեռութիւն պատանւոյն զխարդ եւ իցէ օրինաւոր եղանակաւ... (Գիւ. 1860 Ապրիլ 25):

Գեր. Աբբահայր հրահանգ կու տայ Տրիեստ Հ. Սամուէլ Գաթըրճեանին որ անմիջապէս պատասխանէ եւ հարկ եղածը կարգադրէ: Հ. Մանուէլ Տէվրիշեան Պոլսէն կը գրէ որ Հ. Դաւիթ Ուզունեան ընկերանալով տղուն՝ Պոլսէն 1860 Սեպտ. 12ին ճամբայ կ՚ելլէն Դանուբի վրայէն Վիեննա գալու համար: Կը շեշտէ որ բոլոր ծախքերը հայրը կը հոգայ:

Հ. Դաւիթ տղան Վիեննա կը բերէ եւ կը յանձնէ վարդապետներուն ու ինքը կը վերադառնայ: Տղան հաստատութեան մը մէջ կը դրուի ուսում եւ դաստիարակութիւն ստանալու համար: Մերինները միշտ կապակցութեան մէջ կ՚ըլլան հաստատութեան հետ եւ յաճախակի կը տեսնեն Գրիգորը, որուն ծախքերը՝ հօրմէն ստանալով դրամ՝ կը վճարեն հաստատութեան: Տղան կ՚ընէ

յառաջդիմութիւն թէ՛ ուսման եւ թէ վարքի մէջ: Մերիններուն թղթակցութեամբ ծնողքը տեղեակ կը պահուի Գրիգորի վիճակի մասին: Խաչատուրի որդիները՝ Յակոբ, Սեբովբէ եւ Յարութիւն Կէօչէյեանները շնորհակալութիւն կը յայտնեն մեր Միաբանութեան՝ Գրիգորի վրայ տարած հոգին ու խնամքին համար: (Դիւ. 1861 Մարտ 25, Յուլ. 28, Օգ. 13):

1861ի արձակուրդին Գրիգոր Տրիեստ կը տարուի, ուր մեր վարդապետներու քով մնալով՝ ծովու բաղնիք կ'առնէ եւ կարճ ատեն մ'ալ Վենետիկ կ'այցելէ ու յետոյ կը վերադառնայ Վիեննա:

Յակոբ Կէօչէյեան կը գրէ Պոլսէն՝ Վիեննայի վանքը. «Վերապատուելի Հայր. Յունուար 5 թուականով մեզի ղրկած թղթերնիդ ձեռքս հասաւ եւ անկէ քիչ օր առաջ ալ Գրիգորիկէն իր ֆրոջ գրած թուղթը ընդունեցանք: Շատ ուրախ ենք որ իր ուսմանցը եւ բարեկրթութեանը մէջ անձամբ կը վկայէք կոր նամակներնուդ մէջ... Միով բանիւ յամենայն ժամ երախտապարտ ենք մեր որդւոյն վրայ ցուցուցած խնամքներնուդ համար...» (Դիւ. 1862 Յունուար 20):

Գրիգորի հայրը Յովհաննէս ալ գեղեցիկ տողերով իր երախտագիտութիւնը կը յայտնէ 1862 Փետր. 25ի նամակով: — Վիեննայի մէջ Գրիգորով զբաղողը գլխաւորապէս Հ. Իգ-

նատիոս Շիւքիւրեանն *է, վանքին ընդհանուր գործակալը։*

*Յաջորդ թղթակցութիւններէ կը տեսնուի թէ* 1862 *Մայիս–Յունիսին Գրիգորի վրայ երբեմն հիւանդագին նշաններ կ'երեւան, որոնք մտահոգութիւն կը պատճառեն։ Եղածը ջղային գրգռութիւն ըլլալով՝ կը խորհին թէ գուցէ հարկ է ջղայիններու հիւանդանոցը դնել զինքը։ Հայրը այս գործը Վիեննայաբնակ* Վիչէն Աղա Համոնի *կը յանձնէ, իբրեւ իրենց Հոգաբարձուի (Դիւ.* 1862 *Յուլ.* 23)։

*Անկէ վերջ ա՛յլ եւս չի յիշուիր Գրիգորը։ Ի՞նչ եղած է։ Ո՞րքան ատեն դեռ մնացած է Վիեննա։ Պոլիս դարձա՞ծ է եւ ե՞րբ։ Որեւէ գրութեան ու ծանօթութեան չենք հանդիպիր։*

1864*ին* Գրիգոր Կէօչէյեանի *մը յիշատակութիւնը կ'ըլլայ, որ* «հարսանիք կ'ընէ», նմանը չտեսնուած փառաւորութեամբ։ *Բայց չենք գիտեր թէ ա՞յս Գրիգորն է՝ թէ ուրիշ մը։ Հաւանական կը թուի թէ այս ըլլայ, զի հարսանիքի յիշատակութիւն ընող Հ. Մա*ղաքիա վ. Սամուէլեան *որոշ կերպով կը չեշտէ թէ հարսանիք ընող Գրիգորը* «երբեմն վիեննա եղողն է»։ *Վիեննա իբրեւ* կղերացու *եկող եւ վերադարձող* Գրիգոր Կէօչէյեան *չենք ունեցած։ Ուրեմն կը մնայ ընդունիլ թէ* Յովհաննէս Կէօչէյեանի որդին Գրիգորն *ըլլալու է* 1864*ին հարսնիք ընողը, որ՝ ինչ–*

պէս տեսանք՝ 1860ին Վիեննա եկած եւ գոնէ մինչեւ 1862 մնացած է։ 1864ին այս Գրիգորը կ՚ըլլար 24 տարեկան։

Հ. Մաղաքիայի յիշատակութիւնը շատ կարճ եւ մանրամասնութենէ զուրկ է։ Չ՚ըսեր թէ Գրիգորը որո՞ւն հետ կը պսակուի եւ ի՞նչ պարագաներով։ Ահա Հ. Մաղաքիայի այդ յիշատակութիւնը. «Գրիգոր Կէօչէյեան, որ անդ էր երբեմն, արար հարսանիս, որոյ փառաւորութիւն չէր լեալ, ասեն, նմանազոյն յազգին» (Դիւ. 1864 Մայիս 25)։

Գիգորի մասին ուրիշ ծանօթութիւն չունինք։

Յովհաննէս Կէօչէյեան Գրիգորէն պատ ուրիշ աղջիկ մ՚ալ ունեցած է, որուն յիշատակութիւնը ըրաւ Յակոբ Կէօչէ իր Վիեննա գրած նամակին մէջ, զոր տուինք վերը։ Ուրիշ տեղեկութիւն չունինք։

Անծանօթ է Յովհաննէս Կէօչէի մահուան թուականը։

7. Վերոնիկա.— Ինչպէս ըսինք վերը՝ Խաչատուր աղջիկ մ՚ալ ունեցած է մեր կարծիքով, անունը Վերոնիկա։ Կը յիշուի Պետրոս Եադըքճեանի ընտանեկան մահարձանին մէջ, որ կը գտնուի Օրթագիւղի Հայ կաթ. Ս. Գրիգոր Լուսաւորիչ եկեղեցւոյ արձանագրութեանց կարգին։ Չի բացատրուիր հոն սակայն թէ Վերոնիկա Կէօչէյեան որո՞ւն կինն եղած է եւ որո՞նք են իր զաւակները։

Տանք նաեւ Պետրոս Եաղլըքճեանի այդ մահարձանը․

Յանմահական յիշատակ
Պետրոս Աղայի Եաղլըքճեան
Նախկին իշխանի եւ սրամիտ բարերարի
Յարկիս սրբութեան
Որ զերկնաւոր տուրս զուարթառատս
Ծանմարանեաց ի գանձարանս աստուածայինս
Փոխարէն զերկլինս խնդրելով
Վասն իւր եւ իւրոցն

Վերոնիքա Կէօչէյեան †1821 Նոյ. 16 ամաց 42
Պօղոս Եաղլըքճեան †1822 Սեպ. 28 ամաց 64
Մարիամ Եաղլըքճեան †1822 Սեպ. 28 ամաց 64
Լուցիքա Եաղլըքճեան †1869 Յնվ․ 7 ամաց 69
(Կոմիտաս Վ․ Զարդճեան, անդ՝ էջ 25) ։

Վերոնիկա Կէօչէյեան հարս գացած է Եաղլըքճեաններու տունը ։ Իր այրը ո՞վ է ։ Որո՞նք են իր զաւակները ։ — Որոշ, ստոյգ բացատրութիւն մը գտած չենք ։ Բայց այս տեղիքէն կը գուշակենք որ իր այրն է Պետրոս Եաղլըքճեան, իսկ իր զաւակները՝ Մարիամ եւ Լուցիքա ։ Պետրոս Եաղլըքճեան ուրիշ մահարձան մ'ալ Շիշլիի գերեզմանատան մէջ ունի (Տե՛ս Հ․ Յ․ Քօսեան, անդ, էջ 152–3), ուր դարձեալ անորոշ եւ անկատար ցանկ մը տրուած է եւ այս ցանկին մէջ չկայ անունը Վերոնիկայի ։

Պետրոս Եազըքճեան *շատ ծանօթ, ա-նուանի եւ սիրուած դէմք մը եղած է Հայ կաթողիկէ համայնքութեան մէջ սկսած* 1830*ական թուականներէն, միշտ առաջնա-կարգ ու ազդեցիկ դիրքով ու պաշտօնով: Եղած է* «Սանտըքճեար» (*արկղակալ*) *երկար ատեն.* «*Գահերեց Ժողովոյն*» (*Հ. Յ. Քօ-սեան, անդ, էջ* 252) Ս. Յովհան Ոսկեբերանի եկեղեցւոյ *շինութեան եւ այդ կապակցու-թեամբ զարդարուած Հռոմէն* Ս. Սեղբեստրոսի Հրամանատարութեան շքանշանով, *եւ այլն:*

## 9. ԱՆԾԱՆՕԹ ԿԷՕՉԷՅԵԱՆՆԵՐ

*Շատ չէ ատոնց թիւը: Գործիս ամբող-ջութեան համար կու տանք ատոնց ցանկն ալ:*

1. Եղբայր Յարութիւն Կէօչէյեան.— *Անդամ է* Անտոնեան Միաբանութեան, *մե-ռած* 1857 *Փետր.* 28*ին եւ թաղուած Ս. Յա-կոբայ գերեզմանատունը* (*Հ. Սահակ Վ. Սրապեան, Ս. Յակոբ Ազգ. Հիւանդանոց, Վիեննա* 1915, *էջ* 111):

2. Սարգիս Կէօչէյեան.— *Վիեննա մեր վանքը եկած է* 1852 *Օգ.* 27*ին իբր* կղերացու *եւ* 1856 *Ապրիլ* 26*ին վերադարձած է Պոլիս: Արձանագրուած չեն ծնողաց անունները, ինչպէս նաեւ իր ծննդեան թուականը:*

3. Յակոբ Կէօչէյեան.— *Հռոմ գացած է քահանայ ըլլալու համար: Չէ ձեռնադրուած:*

Մեկնած է Կեռլա (Հունդարիա)։ 1909ին գինքը տեսած է մեր հայրերէն մին Կեռլայի մէջ, ուր ընտանիք կազմած (կինը հունդարուհի) եւ ունեցած է չորս զաւակ, երկուքը մանչ, մէկը աղջիկ եւ չորրորդն ալ ծնանելէ վերջ մեռած։ Մանչերէն մին կը կոչուի Յովսէփ, իսկ աղջիկը՝ Թագուհի (արտակարգ գեղեցկութեամբ օժտուած)։

## 10. ԼՈՒՍԱՐԱՆՈՒԹԻՒՆՆԵՐ ԵՒ ՅԱՒԵԼՈՒԱԾՆԵՐ

1960 Հոկտեմբեր–Դեկտեմբերին ճամբորդութեամբ Իսթանպուլ գտնուեցանք։ Այդ առթիւ հաճելի անակնկալ մ'եղաւ տեսնելու թէ Կ. Պոլսոյ մէջ ներկայիս ողջ անձեր կան տակաւին հին Հայ Կաթողիկէ Կէօչէյեան Գերդաստանէն եւ այն՝ գլխաւորաբար անոր Բ. Տոհմէն, որուն մասին գրած առեն ցաւով յայտնած էինք թէ չունէինք կենդանի աղբիւրը, «զի ոչ մէկ ողջ անձ ծանօթ է մեզ Բ. Տոհմէն։ Թերեւս կան տակաւին ողջ անձեր Թուրքիա կամ արտասահման, սակայն գժբախտաբար ծանօթ չենք ոչ մէկ անունի կամ հասցէի» (Հանդէս Ամսօրեայ, 1960, էջ 271)։

Ներկայիս Իսթանպուլի մէջ կան աւելի քան հինգ Կէօչէյեան ընտանիք. ընտանիք մը կայ Անկիւրիոյ մէջ, ընտանիք մ'ալ Բուկարեստ։ Ահա Կէօչէյեանց այս ողջ անդամներուն հետ տեսակցութիւն ունենալով՝

*կրցանք քաղել թանկագին լուսաբանութիւններ կէտերու մասին, որոնք կա՛մ բոլորովին անծանօթ ու մութ եւ կամ թերի մնացած էին: Մեր գտած նորութիւնները գլխաւորաբար Ռ. Տոհմէն* Խաչատուրի որդի Թովմասի *մասին ըլլալով՝ սկսինք մեր լուսաբանութիւններն ու յաւելուածներն անկէ:*

*Ռ. Տոհմէն Խաչատուրի որդի* Թովմասի (Թովմա) *Թոռնուհի* Տիկին Իսկուհի *հաճեցաւ տալ մեզ հետեւեալ տեղեկութիւնները: Թովմասի* կնոջ անունը *մնացած էր մեզ* անծանօթ: *Արդ, Թովմաս ամուսնացած է* Իսկուհիի (*ծննդեան եւ մահուան պարագաները անյայտ*) *հետ եւ ունեցած* հինգ մանչ, *բայց աղջիկ* չէ ունեցած: *Այդ մանչերուն* անունները լոկ *գտած էինք* 1876*ին հրատարակուած Հայ Կաթողիկէ Համայնքին «Ընտրողաց եւ ընտրելեաց» ցանկին մէջ: Ահա այդ հինգերը եւ իրենց սերունդը՝ մանրամասն ծանօթութիւններով.* 1. Պօղոս Թովմաս Կէօչէյեան, 2. Կոմիտաս Թովմաս Կէօչէյեան, 3. Պետրոս Թովմաս Կէօչէյեան, 4. Մկրտիչ Թովմաս Կէօչէյեան, 5. Յովհաննէս (Օննիկ) Թովմաս Կէօչէյեան:

1. Պօղոս Թովմաս Կէօչէյեան. — *Ծնունդ եւ դաստիարակութիւն կը մնան անծանօթ: Եղած է կայսերական* փողերանոցի *մէջ պաշտօնեայ: Իբրեւ մեծահարուստ հայ՝ դիրքի տէր եւ յարգուած անձնաւորութիւն մ'եղած է: Իր ամուսնութեան*

մութ մնացած պարագան լուսաբանուեցաւ: Ամուսնացած է Թագուհիի հետ: Ահա իրենց զաւակները. Աստինէ, Վերոն, Յակոբ, Արթին, Կարապետ: ա) Աստինէ († 1914) պսակուած Գրիգոր Թիլքիճեանի († 1918) հետ՝ ունեցած է 4 զաւակ. Խօժէնի († 1916), Անտոն (ծն. 1903ին՝ ամուսնացած է Սէսիլ Աւետիքեանի — ծն. 1920 — հետ, զաւակ չեն ունեցած. Անտոնի գործն է ծաղկավաճառութիւն, իսկ բնակարանը՝ Ֆէրիգիւղ. Անտոն եւ Սէսիլ ողջ են), Պօղոս († 1917), Ադրիէն († 1916): Ինչպէս կը տեսնուի՝ Խօժէնի, Պօղոս եւ Ադրիէն փոքր հասակի մէջ մեռած են: բ) Վերոն՝ առաջին անգամ պսակուելով Բէրիմեանի հետ՝ ունեցած է մանչ մը՝ Ալեքսան (կառագործ-մեքենագործ), իսկ երկրորդ անգամ ամուսնանալով (փեսան անծանօթ) ունեցած է աղջիկ մը: գ) Յակոբ (յիշած էինք զայս «Անծանօթ Կէօչէյեաններ» վերնագրի տակ՝ (ՀԱ. 1960, էջ 287). այժմ կը ճշդենք. երրորդ զաւակն է Պօղոս Թովմաս Կէօչէյեանի եւ Թագուհիի, գացած է Հռոմ քահանայանալու, բայց չէ ձեռնադրուած. անցած Կեռլա (Հունգարիա) ամուսնացած է հունգարահայ օրիորդի մը (անունը անծանօթ) հետ եւ ունեցած չորս զաւակ, որոնցմէ մին է Յակոբ-Անտոն, երկրորդը Յովսէփ, երրորդը՝ Թագուհի (արտակարգ գեղեցկութեամբ օժտուած) որոնք ծանօթ եղած են մեր Հայրերէն երեքին



ՄԻՔԱՅԷԼԻ ԱՂՋԻԿԸ՝ ԼՈՒՑԻՔԱ. ԻՐ ԱՂՋԻԿԸ՝
ԹԱԳՈՒՀԻ ԵՒ ԱՍՈՐ ԱՄՈՒՍԻՆ՝ ՅԱԿ. ՓԵՐԽՈՒՏԱՐ
ԵՒ ԻՐԵՆՑ 2 ԱՂՋԻԿՆԵՐԸ՝ ՄԵԼԱՆԻ ԵՒ ՆԱԶԼԸ

Իր գործը եղած է Կեդրոնական Հայ Որբանոցին Տեսչութիւնը։ դ) Արթին († 1915) մնացած է ամուրի։ Իր արհեստն եղած է դերձակութիւն։ ե) Կարապետ պսակուած է յոյն Քաթինա Սպանիտիսի հետ, որմէ ունեցած է Մարիքա (ծն. 1906, † 1958ին՝ մնացած է կոյս), Էլփիտա (ծն. 1913ին՝ պսակուած է Խրիսթօ Նիքոլայիտիսի հետ եւ ունեցած 3 մանչ), Խրիստինա (ծն. 1917ին՝ ամուսնացած է Եօռկոյի հետ, որմէ ունեցած է 2 մանչ)։ Ասոնցմէ ոմանք ողջ են։

2. Կոմիտաս Թովմաս Կէօչէյեան. — Գրած էինք թէ Ա. Տոհմէն Միքայէլի աղջիկը՝ Լուցիքա՝ ամուսնացած է Թովմաս Կէօչէյեանի մը հետ, որուն ծագումը մեզ թուած էր Բ. Տոհմէն ըլլալ (Տե՛ս ՀԱ. 1959, էջ 560)։ Ստուգիւ ալ տեղեկացանք որ այս Թովմաս Կէօչէյեանը՝ Բ. Տոհմէն Կոմիտաս-Թովմաս Կէօչէյեանն է, զի Կէօչէյեան Գերդաստանի վերաբերող ողջ անձ մը — Դոկտ. Զարեհ Օհանեան, Իսթանպուլ — կը հաստատէ որ այդ Կոմիտաս–Թովմասի թոռան զաւակը՝ նոյնպէս Կոմիտաս է, ինչպէս պիտի տեսնենք վարը։ Դոկտ. Զարեհ մեզ ընծայեց Միքայէլի աղջկան՝ Լուցիքայի կնիկէ-լուսանկարը, զոր հաճոյքով պիտի տանք գործիս արտատպութեան մէջ։

Արդ՝ ըսած էինք թէ վերյիշեալ Լուցիքա՝ Թովմասի (այսինքն՝ Կոմիտաս-Թովմասի) հետ ամուսնանալով՝ ունեցած է եր-



ՏԻԿ. ԹԱԳՈՒՀԻ ԵՒ ԴՈԿՏ. ԶԱՐԵՀ
ԻԲՐԵՒ ՄԽԻԹ. ԼԻՍԸԱԿԱՆ

կու զաւակ, Թագուհի եւ Թովմաս եւ անոնց մասին ուրիշ ծանօթութիւն չունէինք (ՀԱ. 1959, էջ 560)։ Այժմ կ'աւելցնենք՝ ստանալով նոր ծանօթութիւններ։

Ա. Թագուհի († 1934 Բուկարեստ՝ մարմինը փոխադրուած է Պոլիս եւ թաղուած Շիշլիի գերեզմանոցը) ամուսնացած է Յակոբ Պերխուտարի հետ եւ ունեցած 3 զաւակ, որոնցմէ երկուքը աղջիկ եւ մէկը մանչ։ Մանչը ծնանելէն քիչ ետքը մեռած է։ Իսկ աղջիկներն են. ա) Մելանի-Վառիկ եւ բ) Լուցիփա-Նազլը։ ա) Մելանի-Վառիկ (ծն. 1895) ամուսնացած է Միհրան Մէսցէլիի (Իսթանպուլի Ոսկեղջուրի նախկին Շոգենաւային Ընկերութեան գեր-անօրէն) հետ եւ ունեցած զաւակ մը՝ Միսաք (ծն. 1913ին՝ պսակուած է Վերժին Գույումճեանի հետ. զաւակ չունին)։ Մելանի-Վառիկ երկրորդ անգամ ամուսնացած է Հրանդ Շէօհլյեանի հետ, որուն արհեստը ժամագործութիւն — ոսկերչութիւն էր։ Անոնք ներկայիս Բուկարեստ (Ռումանիա) կը գտնուին։ — բ) Լուցիփա-Նազլը (ծն. 1897, † 1930 Յունիս 4) պսակուած է Դոկտ. Գառնիկ Օհանեանի հետ եւ ունեցած զաւակ մը՝ Դոկտ. Զարեհ Օհանեան, որմէ կը քաղենք այս մանրամասնութիւնները։ Ներկայացնենք այս շատ յարգելի անձնաւորութիւնը։

Դոկտ. Զարեհ (ծն. 1913 Ժընեւ) իր նախնական ուսումը Կ. Պոլսոյ Հայ Կաթո-

ղին Ս. Գրիգոր Լուսաւորիչ վարժարանի
մէջ ընելէ վերջ՝ անցած է Բանկալթիի
Վիեննական Մխիթարեան Լիսէի բարձրա-
գոյն ընթացքին, զոր աւարտած է 1931ին
փայլուն վկայականով: Յետոյ մեկնած է
Բուքարեստ (Ռումանիա), ուր բժշկական
համալսարանի արձանագրուելու համար
անցուցած է ռումանական Baccalauréatի
քննութիւն եւ ընդունուած բժշկական ճիւ-
ղին մէջ: Չորս տարի վերջ վերադարձած է
Իսթանպուլ, ուր շարունակելով բժշկական
ուսումը տեղւոյն պետական համալսարանի
մէջ՝ 1941ին շրջանաւարտ եղած է ատամնա-
յով դոկտորայի վկայական:

Դոկտ. Զարեհ գոհացած չէ սակայն
բժշկական վկայականով: Իր ձգտումն եղած
է մասնագիտական ուսում ձեռք բերել: Այդ
պատճառաւ հետեւած է ան Իսթանպուլի
համալսարանի ներքին հիւանդութեանց
բաժնին ու կարճ միջոցի մէջ հասած է իր
նպատակին՝ ձեռք բերելով մասնագիտական
տիտղոս:

Տակաւին բժշկական ուսանող՝ Դոկտ.
Զարեհ Օհանեան 1935էն սկսած եղած է օգ-
նական բժիշկ Դոկտ. Թադէոս Սիոսեանին՝
Բանկալթիի Վիեննական Մխիթարեան Լի-
սէին մէջ, ուր յետոյ կը դառնայ վարժա-
րանի միակ ներքին հիւանդութեանց բժիշկը,
պաշտօն մը՝ զոր մինչեւ այսօր կը վարէ



ՏԻԿ· ԼՈՒՑԻԹԱ-ՆԱԶԼԸ

ընդհանուր գոհունակութիւն ու համակրանք վայելելով։

Ամենէն հաճոյքով մըն է որ կու տանք հոս մեր շատ յարգելի բժիշկը նախ իբր Բանկալթիի Մխիթարեան լիսէականն [1] երկրորդ իբրեւ բժիշկ։ Դոկտ. Զարեհ ամուսնացած է Լամբրինի Բոնիի (Lambrini Boni) հետ։ Զաւակ չեն ունեցած։ Դոկտ. Զարեհ ներկայիս կարեւոր պաշտօն կը վարէ նաեւ Իսքանպուլի պետական հիւանդանոցին մէջ։

Լուցիքա — Նազլը երկրորդ անգամ ամուսնացած է, 1925ին, Յարութիւն Քէօշէքեանի (†1930 Յունիս 4ին) հետ, որմէ ունեցած է աղջիկ մը, որ կանխահաս մահացած է։ Տիկինը շատ կրօնասէր եւ հաւատացեալ անձ մը եղած է, ինչպէս ականատեսները կը պատմեն։ Իր երկրորդ ամուսինը որուն ցաւէն անձնատուր եղած է կնոջ մահուան օրը։ Յարութիւն Քէօշէքեան Բերայի մեծ պողոտային վրայ, այն տանուան ամենամեծ նպարավաճառի խանութն ունեցած է։ Կու տանք Տիկ. Նազլըի նկարը քիչ վերը։

Բ. Թովմաս (Ծն. 1874 † 1932) եղած է Dettes Publiquesի պաշտօնեայ եւ երկար տարիներ վարած է այդ պաշտօնը իբրեւ պետը մասնաւոր ճիւղի մը։ Ամուսնացած է Վերժին Ճէվահիրճեանի (Ծն. 1875 † 1950)

[1] Մխիթարեան վարժարանի մէջ երկար տարիներ յատուկ համազգեստ գոյութիւն ունեցած է,

հետ, որմէ ունեցած է աղջիկ մը՝ Լիւսի (Լուցիէա, Ծն. 1895), որ ներկայիս ընտանիքով Անկիւրիա կը գտնուի: Լիւսի պսակուած է Գրիգոր Թաշճեանի (կօշկակար՝ † 1942) հետ եւ ունեցած զաւակ մը՝ Կոմիտաս (ապացոյց՝ թէ Ա. Տոհմէն Միքայէլի աղջիկ Լուցիէայի ամուսինը՝ Թովմաս՝ Բ. Տոհմէն Կոմիտաս-Թովմասն է, ինչպէս որ ընտանեկան ուրիշ անուններու նոյնութիւններն ալ կը հաստատեն զայդ): Կոմիտաս (Ծն. 1921) հաշուակալ է Անկիւրիոյ մէջ: Ամուսնացած է Յասմիկ Խոշորեանի հետ, որմէ ունի 3 աղջիկ. Սիրարփի (Ծն. 1947), Սեդա (Ծն. 1948) եւ Սիլվա (Ծն. 1951):

3. Պետրոս-Թովմաս Կէօչէյեան.— Անծանօթ են ծննդեան ու մահուան թուականները: Իր զբաղումը եղած է ծաղկամշակութիւնը: Պետրոս ամուրի մնացած է:

4. Մկրտիչ-Թովմաս Կէօչէյեան.— Ամուսնացած է Վասիլիք Ճէվահիրճեանի (†1920) հետ եւ ունեցած Խսկուհի անունով աղջիկ մը, որ ազնուօրէն հաղորդեց մեզ թանկագին ծանօթութիւններ, ինչպէս յիշած էինք վերը: Խսկուհի (Ծն. 1902 Ապրիլ 12ին) պսակուած է Բարունակ Մաղաքեանի (Ծն. 1881 †1946) հետ եւ զաւակ չեն ունեցած: Ինքը կը բնակի Պոլսոյ Պոմոնթի թաղը:

5. Յովհաննէս (Օննիկ)-Թովմաս Կէօչէյեան.— Ծանօթութիւն կը պակսի իր ծննդի, գործի եւ այլ պարագաներու մա-

ոյին։ Մնացած է ամուրի։ Մեռած է 1907–1908ին



Իբրեւ լուսաբանութիւն հոս կ'աւելցնենք նաեւ հետեւեալը։ Ա. Տոհմէն Անտոնի որդի Պօղոս՝ Թագուհիի հետ ամուսնանալով ունեցած էր Մադրլէն եւ Տիրուհի, ինչպէս պատմած ենք (ՀԱ. 1959, էջ 558)։ Տիրուհիի երկրորդ ամուսինը յիշած էինք իբրեւ Մըկրտիչ Թոփաքեան։ Մինչդեռ ըլլալու է Մկրտիչ Թոփալեան, որ Պոլսոյ համբաւաւոր «Թոփալեան» գոյգ պանդոկներուն (Բերա–Թարապիա) տէրն է։ Ասոնց աղջիկը՝ Մէրսէտէս՝ ամուսնացած է Medowitchի հետ. հօրը մահէն վերջ՝ երկար տարիներ վարած է վերոյիշեալ պանդոկներու անօրէնութիւնը, ինչպէս նաեւ Թարապիոյ մէջ Summer Palace անունով ուրիշ պանդոկ մը եւս։

## 11. ԿԷՕՉԷՅԵԱՆՑ ԿԱԼՈՒԱԾՆԵՐՈՒ ԵՒ ԳԵՏԻՆՆԵՐՈՒ ՆԵՐԿԱՅ ՎԻՃԱԿԸ

Պոլիս գտնուած միջոցիս առիթ ունեցայ լուսաբանուելու նաեւ Կէօչէյեանց ունեցած կալուածներու եւ գետիններու ներկայ վիճակի մասին։ Բերայի (Տօլլիեօլ Թիւ 191) մէջ շինուած շէնքը ներկայիս փլցուած է եւ տեղը Atlas անունով շարժանկարի հոյակապ շէնք մը բարձրացուած է։ Պէպէքի

հնադարեան ամառանոցը ներկայիս բոլորովին փլցուած ըլլալով՝ խոշար գետին մ'եղած է եւ այդ վիճակի մէջ կը մնայ: Այդ շէնքը 70 սենեակ կը պարունակէր:

Իբրեւ նորութիւն կրնանք աւելցնել որ Ա. Տոհմէն Յովսէփի աղջիկը՝ Նեկտար Գատրգիւղի մէջ արեւելեան բաղնիք մը ունեցած է, որ մինչեւ այսօր տակաւին «Կէօչէ-Օղլուի Բաղնիք» անունով կը ճանչցուի:

1922ի ատենները Կէօչէյեանց մինչեւ այն գաղափարը կը տիրէր թէ Պոլսոյ եւ շրջակայից մէջ 80 կտոր կալուած ունին:

1960 Դեկտ. 31ին Տիկին Հայկանոյշ Մառքի հրաւէրով այցելութիւն մը տուի Խասգիւղի Գալփայեան Որբանոցին, հիմնուած բարեկիրթ Սրբուհի Գալփայեանէ, 1865–6ին: Տան զանազան յարկաբաժինները դիտելէ վերջ՝ անցանք մատուռը, ուր հաճելի անակնկալ մը մեզ դիմաւորեց. — Որբանոցի մատրան մէջ տեսանք Կէօչէյեանց Ջահը (Տե՛ս ՀԱ. 1960. էջ 124), որ մատրան մէջտեղը, ձեղունէն կախուած է: Այս ջահը ծանօթ է Պոլսոյ մէջ «Անտոն Քէօչէ Օղլուի ջահ» անունով, որմէ յայտնի կ'ըլլայ թէ ծագումը Կէօչէյեանց Ա. Տոհմի գլուխ Անտոն Քէօչէի ժամանակէն է: Ամբողջութիւնը իսկական գոհար մ'է գեղեցկութեան արուեստի ու ճաշակի: Ջահը յօրինուած է վրայէ վրայ երկու յարկէ. վարի լայն մասն երթալով կը նեղնայ դէպի վեր: Վարի յատա-

*կը եւ վերի ծայրամասը կը գտնուին մէկմէկ գունաւոր ճենապակիէ խորունկ ափսէներ։ Ջահին մոմերու աշտանակները* ճենապակիէ շինուած գոյնզգոյն «փարոս»ներ *են, որոնց գումարն է 24 հատ։ Այս «փարոս»ներուն միջեւը կը տեսնուին կանանչ տերեւներ եւ գունաւոր ծաղիկներ։ Ջահ կրնար երեւակայել առկէ աւելի սիրուն նմոյշ մը բարձրագոյն արուեստի։ Սուտքիւ մեծադին բան մը եղած ըլլալու է եւ արժանի մեծափարթամ գերդաստանի մը իշխանավայել սրահները զարդարելու համար։*

⁂

*Կէօչէյեանց այս կալուածներուն ու գետիններուն ներկայ ողջ տէրերը — Հոռմ, Պաղոսա եւ այլուր — իրենց սեպհականութեան իրաւունքը ձեռք բերելու համար ձեռնարկած են օրինաւոր դատաստանական գործողութեան մը։ Իրենց փաստաբանն է* Պր. Ջ. Հ. Սրապեան, *որ թէ՛ Անկիւրիոյ եւ թէ՛ Իսթանպուլի մէջ տեղի ունեցած դատավարութեանց միջոցին պաշտպանած է Կէօչէյեանց իրաւունքը եւ անձամբ մեզ հաւաստեց թէ դատը շահուած է ի նպաստ Կէօչէյեաններուն։*



